ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# ԵՐԿԵՐ

## ՀԻՆԳ ՀԱՏՈՐՈՎ

## Ա

## ՊԱՏՄԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ- 2006

ՀՏԴ 941(479.25)
ԳՄԴ 63.3(2Հ)
Ա 205

**Ադոնց, Ն. Գ.**

Ա 205 Երկեր. հատ. Ա., Պատմագիտական ուսումնասիրություններ /Հրատարակության պատրաստեց Պ. Հ. Հովհաննիսյանը . - Եր., Երևանի համալս. հրատ., 2006, 652 էջ + 1 էջ ներդիր:

Նիկողայոս Ադոնցի երկերի առաջին հատորն ընդգրկում է հին և միջնադարյան Հայաստանի քաղաքական պատմությանն ու հոգևոր կյանքին, սոցիալ-տնտեսական հարաբերություններին նվիրված հիմնական աշխատությունները: Ներկայացված ուսումնասիրություններից շատերը կարևոր ներդրում են ոչ միայն հայագիտության, այլև ընդհանուր պատմագիտության բնագավառում:

Հասցեագրվում է հայագետներին և ընթերցող հանրությանը:

Ա $\frac{0503020913}{704\ (02)\ 06}$ 2006

ԳՄԴ 63.3(2Հ)

ISBN 5-8084-0704-4






FUNDAÇÃO CALOUSTE GULBENKIAN

ԵՊՀ հրատարակչությունը իր երախտագիտությունն է հայտնում
**ԳԱԼՈՒՍՏ ԳՅՈՒԼԲԵՆԿՅԱՆ**
հիմնարկության Հայկական բաժանմունքի տնօրեն
դոկտոր **ԶԱՎԵՆ ԵԿԱՎՅԱՆԻՆ,**
մեծանուն հայագետ Ն. Ադոնցի երկերի ժողովածուի
հինգհատորյակի հրատարակությունը նախաձեռնելու և
հովանավորելու համար:

***Խմբագրական հանձնաժողով***
***Հովհաննիսյան Պ. Հ., Մարդյան Ա. Գ., Ստեփանյան Պ. Գ.***

***Հատորը հրատարակության պատրաստեց***

***Պ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ***

կողմնակալ է ներկայանում Ա. Վասիլևի աշխատությունը (տե՛ս **А. Васильев**, Происхождение императора Василия Македонянина, "Византийский временник", т. XII, вып. 1-4, СПб., 1906, стр. 148-165: Տե՛ս նաև **G. Ostrogorsky,** Histoire de L'Etat Byzantin, Paris, 1956 և այլն): – էջ 438:

11. Բացի նշվածներից, Ն. Ադոնցը Վասիլ I կայսեր գործունեության վերաբերյալ հրապարակել է նաև այլ աշխատություններ [«Nicéphore et L'origine de Basil I», տե՛ս «Byzantion», Bruxelles, 1933, t. VIII, p. 203-212 (Հ. Գրեգուարի համագործակցությամբ). «La portée historique de L'Oraison funebre de Basile I par son fils Léon VI le Sage», «Byzantion», 1933, t. VIII, fasc. 2, p. 501-513]: Պատմաբանի արխիվի նյութերի հետազոտությունից պարզվում է, որ նա ցանկացել է առանձին ուսումնասիրություն նվիրել նաև Վասիլ I-ի արքայական ընտանիքին: «Հայ-Մակեդոնական հարստության պատմությունը» խորագիրը կրող հայերեն ձեռագիր աշխատությունից պահպանվել է շուրջ 70 էջ: Այստեղ կանոնավոր շարադրանքով (էջ 28-53, 59-64) ներկայացված է «Վասիլ Հայկազն» գլուխը, մնացածները անկանոն են, թափված են բազմաթիվ էջեր (1-27, 54-58, 65-74 և այլն, տե՛ս պահարան 1, գզրոց Դ, թղթածրար 3): – էջ 438:

## ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ՓԱՌՔԸ
(էջ 439)

Գրված է 1928-1929 թթ. Փարիզում, լիովին վերակառուցված ու վերաշարադրված 1930-ական թվականների վերջերին Բրյուսելում: Առաջին անգամ տպագրվել է «Հայրենիք» ամսագրում (1928, 7-րդ տարի, № 1, էջ 61-70, № 2, էջ 47-55: 1929, № 3, էջ 78-89, № 4, էջ 60-69, № 5, էջ 147-156, № 6, էջ 79-88): Երկրորդ անգամ լույս է տեսել «Պատմական ուսումնասիրություններ» ժողովածուում (էջ 49-156), իսկ երրորդ անգամ՝ Կահիրեի «Հուսաբեր» օրաթերթում (1963, 9, 10, 11, 12, 13, 14, 16, 17, 18, 19, 20, 21, 23, 24, 25, 26, 27, 28, 30, 31 դեկտեմբերի, № 214-233: 1964, 2, 3, 4, 7, 8, 9, 10, 11,13, 14, 15, 16, 17, 18, 20, 21, 22, 23, 24, 25, 27, 28, 29, 30, 31 հունվարի; 1, 3, 4, 5, 6 փետրվարի, № 234-263): Արտատպվում է 2-րդ հրատարակությունից:

1. Ակնարկում է 774-775 թթ. հակաարաբական ապստամբությունը: – էջ 439:

2. Հայաստանի արաբական ամիրայությունների և արաբ գաղթականության մասին հատկապես արժեքավոր է Ա. Տեր-Ղևոնդյանի ուսումնասիրությունը (տե՛ս **Ա. Տեր-Ղևոնդյան,** Արաբական ամիրայությունները Բագրատունյաց Հայաստանում, Երևան, 1965): – էջ 447:

3. Նկատի ունի Մովսես **Խորենացուն**: – **Էջ** 493:

4. Վրաց Բագրատունիների ծագման ու հարակից հարցերի մասին տե՛ս նաև՝ **Ա. Սարուխան,** Բագրատունյաց արքայական հարստությունը Վրաստանում, «Հանդես ամսօրյա», 1939, № 7-12; **C. Toumanoff,** The Bagratids of Iberia from the eigth to eleventh century, «Le Muséon», Louvain, 1961, t. LXXIV, № 1-2; նույնի՝ «Studies in Christian Caucasian History», Ceorgtown, 1963 և այլն: – **Էջ** 506:

5. Պարզապես վրիպակ է, պետք է լինի՝ 1736 **թ**.: – **Էջ** 526:

6. Տե՛ս «Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ», ի լոյս ածին **Գ. Տէր-Մկրտչեան** եւ **Մեսրովբ Եպիսկոպոս,** Էջմիածին, 1921: Հմմտ. նաև «Արարատ», 1888, էջ 399-404; **Ղ. Ալիշան**, Հայապատում, Վենետիկ, 1901, էջ 221-222: – էջ 527:

7. Խոսքը վերաբերում է Սամուել Անեցուն (տե՛ս «Սամուելի քահանայի Անեցւոյ հավաքմունք ի գրոց պատմագրաց», աշխատասիրությամբ **Ա. Տեր-Միքելյանի,** Վաղարշապատ, 1893): – **Էջ** 528, ծան. 2:

# ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ՓԱՌՔԸ[1]

Հազվագյուտ են պատմության մեջ այնպիսի իշխանական տներ, որպիսիք են Բագրատունիք, հազվագյուտ Արևելքում, թե Արևմուտքում: Տոհմ է բազմադարյան, աշխարհաշեն և աշխարհակալ և փայլեց իր հանճարով հատկապես արաբական շրջանում:

Իններորդ դարը ընկճված ազգությունների սթափումի և զարթումի դար էր: Արաբական պետությունն այլևս ահարկու չէր թվում: Ամիրապետների երեկվան հուժկու ձայնը սկսել էր նվազել: Նրանց կուսակալներն անգամ անջատական հակումներ էին ցույց տալիս և պատրաստ էին պատեհ առթիվ խզել իրենց կապերը կենտրոնական իշխանությունից: Խալիֆների պետությունն անպայման քայքայման մեջ էր, մինչ նրա ախոյան Բյուզանդական կայսրությունը նոր ոգի առած ընթանում էր դեպի բարձրություն:

Քաղաքական մթնոլորտի լուծ դրությունը զաղտնիք չէր: Խլրտումներ ու խռովություններ անպակաս էին որպես բնական հետևանք: Ազգային ճնշված զգացումներն արթնացած հետամուտ էին իրենց օրինական իրավունքների: Պարսկաստանը, կրոնական աղանդավոր պատրվակի տակ, սնում էր և ծավալում քաղաքական ազատագրության ծրագիրներ: Զորավոր շարժումը ծայր էր տվել Հայաստանի սահմանագլխում, Ատրպատականի մեջ: Մուսուլման ներքին գժտությունները հնարավորություն տվին հայերին հանգիստ առնել և վերակազմվել մերձավոր անցյալի ահավոր հարվածներից:

Տարաժամ ապստամբությունն, որ պայթեց ութերորդ դարի երկրորդ կեսին (1), ջլատել էր հայ մարտիկ ուժերը: Մամիկոնյան առյուծները, ըմբոստության այդ աներկյան դրոշակակիրները, վերջին հրաժեշտն էին տվել հայ կյանքին: Ասպարեզը մնացել էր նրանց հակառակորդ և մրցորդ Բագրատունի իշխաններին: Խոհեմություն չէր, անշուշտ, Մամիկոնյանների կողմից՝ կանխել ապագան և բաց ճակատ հարդարել թշնամու դեմ մի այնպիսի ժամանակ, երբ սա, թեև արդեն անկման ճանապարհի վրա, բայց տակավին բավականին զորեղ էր սանձելու անհնազանդության ճիգերը: Պետք էր սպասել հյուծման վերահաս ժամին, որպեսզի կարելի լիներ հանգել հաջողության, հանգել մանավանդ առանց մեծ զոհողության:

[1] Ներկա հոդվածս հիմնովին վերամշակումն է այն գրության, որ երևաց «Հայրենիք»-ի մեջ նույն վերնագրի տակ: Վերջնիցս հազիվ քանի մի էջեր են մնացել անփոփոխ:

Բայց և այնպես 775 թվի ապստամբության խիզախ փորձն անպտուղ չանցավ: Պարտությունները, ռազմական դաշտերի անհաջողություններն ևս իրենց հատուկ խորհուրդն ունեն: Մամիկոնյան ընդվզումը թողեց այն կտակը, որ հաղթական արաբը բնավ անպարտելի չէ և ո՛չ էլ հայ քաղաքական տենչանքը՝ սին երազը:

Երազն իրականացավ շնորհիվ Բագրատունիների, որոնք հետևեցին և պսակեցին հաջողությամբ մի քաղաքականություն, որի հիմը դրել էր Բագրատունի Աշոտ Կույրը, նա, որ զոհեց հայրենիքին իր աչքերի լույսը: Տոկուն աշխատանքով, շրջանկատ հեռատեսությամբ, կշռելով հանգամանքները, չանտեսելով ո՛չ մի միջոց, նաև զենքի դիմելով ի հարկին, Աշոտ Կույրի սերունդը կարողացավ պատկառանք ազդել հայ անվան և թագեր կապել ոչ միայն հայրենի երկրում, այլև նրանից դուրս: Բագրատունի տոհմը, որպես հինավուրց մայրի, փռեց իր լայնատարած ճյուղերը հայ և հարևան երկիրների վրա: Առաջին փորձն էր կապել հայ, վրացի, աղվան և մյուս դրացի ժողովուրդները համերաշխության օղակով Բագրատունի հարստության հովանու ներքո:

Մեծախորհուրդ է, որ Վրաց ազգային հիշատակարանը, հայտնի **«Քարթլիս ցխովրեբան»,** բացվում է այն նշանավոր հայտարարությամբ, թե հայ, վրացի, աղվան, մինգրել, լեզգի և մյուս կովկասյան ժողովուրդները կազմում են մի ընտանիք և սերում են հսկա Թորգոմից, որ հաղթեց Ներբովթին և հաստատվեց Արարատի ստորոտում:

Վրաց հիշատակարանը խմբագրված է ոչ առաջ, քան XI դարը, մի այնպիսի ժամանակ, երբ վրաց ազգային ինքնագիտակցությունն ու քաղաքական կյանքը մեծ խոյանքի մեջ էր: Շատերին խորթ է թվում, որ այսպիսի պայմաններում վրացի գրիչը հնարավոր է գտել խոստովանել և տալ հային առաջնության պատիվ: Սակայն պետք չէ մոռանալ, որ հիշատակարանի հեղինակը եկեղեցական անձ է: Որքան և կաշկանդված լինեւ նրա միտքն ազգային ինքնասիրությամբ, նա չէր կարող, վանականին հատուկ բարեպաշտությամբ, ուրանալ Սուրբ Գրքի հեղինակությունը, որի համաձայն նորոգ մարդկության օրորանը Արարատն է, Հայաստանը, չէր կարող անտեսել պատմական ճշմարտությունը, որ Հայաստանը, թե՛ իր տարածությամբ, և թե՛ անցյալ կյանքով «հանուրց հիւսիսականաց վեհագոյնն» է: Նա քաջածանոթ էր հայ պատմական մատենագրության, որի նմանը չունեին դրացիները և որից քաղած նյութերն և ներշնչումները զգալի են նրա առասպելական երկի մեջ: Այս բոլորի հետ հաշվի է առնելու և Բագրատունյաց կատարած խաղարար դերը, նրանց շաղկապող քաղաքականությունը: Հայ զավակ լինելով, գործեցին Վրաստանում որպես վրացի, և Աղվանքում ծառայեցին տեղական շահերին: Այն

գիտակցությունն, որ միևնույն կոճղի արենակից ոստերն են, պահեց նրանց մեջ հաշտ համակեցության ոգին և սովորական մրցության եռանդը երբեք չարատավորվեց արյունահեղ տեսարաններով և ո՛չ էլ երբեմնակի ընդհարումները ավելի մեծ ծավալ ստացան, քան այն հուզումները, որ պայթում էին, ֆեոդալական միջավայրի հատուկ ելևէջներով, միևնույն երկրի զանազան տարրերի մեջ: Բագրատունյաց շրջանի բարի հարևանությունը եզակի երևույթ է, երբ հիշենք մարդկային այն տկարությունը, որ ամեն տեղ և ամեն ժամանակներում դրացի ժողովուրդները համակված են փոխադարձաբար անբարի զգացումներով:

# I

Բագրևանդի արյունահեղությունը 775 թվին հիմք դրեց նոր քաղաքականության: Ըմբոստական ցույցերը տեղի տվին խոհեմության: Մամիկոնյան կարմիր զինվորները իջան պատմության ասպարեզից: Մուշեղն ընկավ մարտի դաշտում: Նրա երկու որդիները փախան Վասպուրական: Վրիժառու թշնամին հալածում էր նրանց: Մեհրուժան Արծրունին սպանեց տմարդաբար Մամիկոնյան պատանիներին, սև անուն թողնելով պատմության մեջ: Նրանց քույրը ստիպվեց ամուսնանալ Ջահապ մուսուլման իշխանի հետ, վերահաս վտանգից փրկվելու համար:

Մամիկոնյան իշխանուհին արաբի հարսանեկան առագաստում՝ որպիսի ողբերգություն է Մուշեղների մարող տան մեջ:

Քիչ հետո կորավ Կամսարական նշանավոր տունը: Խազրաց արշավանքին, նրանց դեմ ելնելով, մեռավ Ներսեհ Կամսարականը 785 թվին և նրանով վերջացավ Կամսարական տոհմը, Մամիկոնյանների ազգական և հավատարիմ դաշնակիցը: Այս երկու փայլուն աստղերն ընկան գրեթե միաժամանակ հայ երկնակամարից:

Մնացին Բագրատունիք պատասխանատու դերում միգապատ ապագայի հանդեպ: Ուղին դժվարակոխ էր, թեև նրանց ընտրած քաղաքական թելը թվում էր հաստատ: Քանի մի սերունդ նույն ուղիով էին ընթացել: Աշոտ Կույրի թողած ավանդին հետևեցին նրա հորեղբորորդի Սահակը, և սրա որդի Աշոտը, և այն Բագարատը, որ ընկավ Ներսեհ Կամսարականի հետ խազարաց և հոնաց դեմ ճակատելով 785 թվին:

Աշոտ Կույրի որդին Սմբատ սպարապետ մասնակցեց 775 թվի ապստամբության, թերևս, այն պատճառով, որ Մամիկոնյան փեսա էր: Մի քայլ էր, որ կարող էր վարկաբեկել արաբական իշխանության առ Բագրատունիներն ունեցած վստահությունը: Իշխանաց իշխան կարգվեց արաբների կողմից Տաճատ Անձևացին, որ այդ միջոցին, 782 թվին, թողել էր բյուզանդական ծառայությունը և անցել արաբների կողմը: Օրման

ոստիկանը դժվարանում էր կատարել ամիրապետի կարգադրությունը, տեսնելով հայ իշխանների ընդդիմությունը: «Յղէր դեսպանս առ իշխանն իւրեանց,- ասում է Ղևոնդ,- եթէ ոչ է կամք միաբանութեան նախարարաց Հայոց, եթէ զայր մի ապստամբեալ յիշխանութենէդ քումմէ և ձեռն տուեալ առ արքայն Յունաց կացուցանել իշխան ի վերայ այսոցիկ, որ նուաճեալ են ընդ իշխանութեամբ քով, զուգէ եւ դաւաճան զօրաց մերոց լինիցի»[1]:

Տաճատ Անձևացին առաջին ապստամբության ժամանակ թողել էր հայրենիքը, մտել բյուզանդական բանակը և մեծ հռչակ ստացել քսաներկու տարվա ծառայության ընթացքին: Սրա թեկնածության ընդդիմացող իշխանները, հարկավ, Բագրատունիներն էին, որ իրենց ժառանգական իրավունքն էին համարում իշխանաց իշխանի կոչումը: Ոստիկանը ստիպված էր տեղի տալ բարձր հրամանին և իշխանությունը տալ Տաճատին, որ Հարունի անձնական բարեկամն էր:

Տաճատ սպանվեց Խազարաց արշավանքին Բագարատ Բագրատունու և Ներսեհ Կամսարականի հետ 785 թվին: Ասպարեզը մնաց Սմբատի որդիներին:

Սմբատի եղբայրը, ուրեմն Աշոտ Կույրի մյուս որդին, որ կոչվում էր Վասակ, հիշվում է 775 թվի ապստամբության առեն, բայց հայտնի չէ, թե անմիջական մասնակցություն ունեցավ Բագրևանդի կռվին: Վասակ թողեց հայրենի ամրոցը Դարոյնք, այժմու Բայազիտը, և հեռացավ Տայք: Սա է, այս Վասակը, Վրաց Բագրատունիների նախահայրը, ինչպես կտեսնենք:

Սմբատ երկու որդի ուներ, Աշոտ, որ կոչվեցավ Մսակեր, և Շապուհ: Սրանք են, որ սկիզբ դրին Բագրատունյաց մեծության: Ի՞նչ պայմաններում և ինչպե՞ս գործեցին երկու եղբայրները և իրենց հետնորդները, հայ աշխարհի նորոգ շինարարները:

Խոովարար ցույցերի հետևանքով արաբ իշխանությունը հետամուտ եղավ զորացնելու արաբական գաղութները Հայաստանում:

Ինչպես արևելյան բոլոր աշխարհակալները, ամիրապետները սովորություն ունեին ցեղակից գաղութներ հաստատել նվաճված երկրներում, որպես բնական նեցուկ իրենց տիրապետության: Հարկավ, ամենից առաջ աշխատում էին բռնել խոշոր կենտրոնները և ռազմական նշանակություն ունեցող ամրոցները ստվար զինվորական ուժերով, որոնց հարում էին անմիջապես իրենց ընտանիքները և այսպիսով կազմում էին մուսուլման ազդեցիկ համայնքներ:

Հայաստանի, բառիս լայն, արաբական ըմբռնումով, բոլոր գլխավոր քաղաքները հոծ արաբական բնակչություն ունեին: Ոչ միայն վարչական և

---

[1] Ղևոնդ, Գլ. 39, Ս. Պետերբուրգ, 1887:

զինվորական կենտրոնները, Դվին, Պարտավ, Թիֆլիս, Կարին, Խլաթ, այլև մյուս խոշոր ավանները, Արճեշ, Բերկրի, Դատվան, Նախճվան, Հեր, Սալմաստ, մուսուլմանների ձեռքին էին:

Ղևոնդ Վարդապետի ասելով, Եզիդ որդի Ուսադի, որ ոստիկան եկավ խալիֆ Մանսուրի առաջին տարին, ուրեմն 754 թվին, «ածեալ արս յորդուցն Իսմայէլի բնակեցոյց ի նմա նոցին ընտանեօք պահել զքաղաքն եւ զգուշանալ ի թշնամեացն: Եւ կարգեաց նոցա պատրաստութիւն կերակրոց յաշխարհէս Հայոց»:

Երբ Մուշեղ Մամիկոնյան ապստամբելով սպանեց Բագրևանդում Ապումճուր անուն արաբ պաշտոնյային, նրա վրա եկան «յորդուցն Իսմայէլի ի քաղաքէն Կարնոյ որք էին արք իբրեւ երկերիւր վառեալք կուռ սպառազինութեամբ»:

Սրանց պարտության լուրը Դվին հասնելուն պես, քաղաքի մուսուլմանները շտապեցին օգնության ոմն Ապունջիպ արաբացու առաջնորդությամբ և ունենալով «ընտիրս հեծելոց իբրեւ արս չորս հազար» հարձակվեցին Մուշեղի վրա:

Հայ ապստամբները պաշարեցին Արճէշ, անշուշտ, որովհետև արաբների կենտրոն էր: Բնակիչները իմաց տվին Խլաթ արաբ ուժերին քաղաքի պաշարման մասին: Արաբական զորքը, խորասանյան մեծ բանակը, մոտ 30 հազար մարդ, արդեն ժամանել էր Խլաթ: Ապստամբությունը ճնշելուց հետո, հավանական է, որ հազարավոր խորասանցիների մի մասը ևս մնաց Հայաստանում, որպես մշտական բնակիչ:

Ութերորդ դարի վերջին քառորդին արաբ իշխանությունը մեծաքանակ ցեղեր գաղթեցրեց Հայաստան և եռևե եղավ նրանցից կազմելու հողատիրական միություններ, որպես հակակշիռ նախարարական կարգերին:

Արաբական հայտնի և ազդեցիկ ցեղերը վաղուց բույն էին դրել հայկական Միջագետքում, Ամիդի, Եդեսիայի և Մծբնի շրջաններում: Անապատի որդիները դյուրավ տապալեցին Սասանյանների աշխարհասասան պետությունը մասամբ այն պատճառով, որ ցեղական հենարաններ ունեին գլխավոր ճանապարհների վրա: Դարերի ընթացքում արաբական հեղեղը հոսել էր կամացուկ և լճացել Եփրատ և Տիգրիս գետերի տափաստաններում, ծնունդ տալով մեծամեծ իշխանական տների, որ բնական հանգրվաններ դարձան նորեկ աշխարհակալների համար:

Հյուսիսային Միջագետքը, հին Ասորեստանը, որ արաբները կոչում էին Ջեզիրա՝ «կղզի», բաժանված էր երեք շրջանի՝ Դիար-**բակր,** Դիար-**Ռաբիա** և Դիար-**Մուդար: Դիար** հոգնակի ձևն է **Դար** բառի, որ նշանակում է «բնակություն», իսկ բակր, ռաբիա և մուդար արաբական նշանավոր ցեղեր են, որ գրավել էին այդ շրջանները: Առաջինի կենտրոնն է Ամիդ, որ ցայժմ էլ

պահել է արաբական Դիարբակր կամ թուրք արտասանությամբ Դիարբեքիր անունը, երկրորդի՝ Մծբին և երրորդի՝ Եդեսիա կամ Ուռհա (թուրքերեն՝ Ուրֆա):

Արաբները, հայտնի է, բաժանված էին երկու մեծ հատվածի՝ հյուսիսային, որ կոչվում է **նիզար**, և հարավային՝ **եաման** կամ հին գրությամբ **յաման**: Հիշյալ երեք ցեղերը պատկանում են հյուսիսային հատվածին: Սրանցից շատ առաջ Միջագետքում հաստատվել էին եաման կամ եմեն հատվածին պատկանյալ ցեղեր, որոնց թվում **տայ** ցեղը: Այսպես են կոչում ասորիները արաբներին: Նույն տայ անունից է ծագում և պարսկական **տաճիկ** բառը, ընդունված մեզ մոտ:

Թվում է, թե ամենահին զաղթականությունը Հայաստանում հարավային կամ եաման ցեղինն էր: Սրանք կողմնակից էին Օմմայան տան, մինչդեռ նիզար ցեղը պաշտպան էր Աբբասյան խալիֆներին:

Մեր պատմագետները հիշում են Յամանիկ իշխան արաբացի Պարտավ քաղաքում: Երևում է, որ յամանիկ գաղութ է եղել Աղվանից մայրաքաղաքի շրջանում: Հավանական է նաև, որ գաղութը Օմմայանների ժամանակներից լինի, նկատի առնելով այդ ցեղի համակրությունը Օմմայան խալիֆներին:

Ավելի դրական տեղեկություն կա նիզար ցեղի մասին: Հարուն ալ Ռաշիդի առաջին տարին, ուրեմն 786 թվին, ոստիկան եկավ Յուսուֆ իբն Ռաշիդ աս-Սուլամի, որը մեծ գաղթականություն բերեց նիզար ցեղից: Մեծ հատվածներ կային նմանապես բակր և մուդար ցեղերից: Բակրի արյուն ուներ շայբանի տոհմը, որ հաստատված էր Ամիդ և զորանալով ձգտում էր ձեռք դնել մերձակա հայ հողերի վրա: Կուսակալության պաշտոնը, որ հաճախ տրվում է այդ տոհմի ներկայացուցիչներին, նպաստավոր միջոց էր նրանց զորացման:

Շայբանի տոհմից էր Եզիդ իբն Մազիադ, որ երեք անգամ կուսակալ նշանակվեց Հայաստան 775-800 տարիների ընթացքին: Առաջին կուսակալության ժամանակ, մոտ 787 թվին, տեղափոխեց Հայաստան ռաբիա ցեղից մեծ բազմություն: Բակր ցեղը, որին պատկանում էր ինքը, մի ճյուղավորումն էր ռաբիայի, ուրեմն, իր ցեղակիցներին էր բերել հաստատելու Հայաստան, ամրացնելով նրանց միջոցով և իր տոհմի ազդեցությունը:

Իսկ Եզիդի հաջորդ Արդ ալ Կաբիրը գաղթականություն հանեց մուդար ցեղից նմանապես մեծ չափով: Այս ցեղը մի քանի ճյուղեր ուներ, որոնց մեջ հայտնի էին մանավանդ **կայս** և **ութման:** Կայս տարածված ցեղ էր և այնքան ազդեցիկ, որ երբեմն նրա անունով էր կոչվում ամբողջ նիզար խումբը:

Արդալ Կաբիր ոստիկանի բերած գաղթականները կայս և ութման ցեղերինն էին, որ մեր հեղինակների մոտ կոչվում են կայսիկ և ութմանիկ (ինչպես տաճիկ, պարսիկ, խուժիկ): Կայսիկները հաստատվեցին Ապահունյաց

գավառում, կենտրոն ունենալով Մանազկերտ, այժմ Մելազկերտ քաղաքը, իսկ ուքմանիկները՝ նրանց հարևան Առբերանի գավառում, Բերկրի քաղաքի և Ամյուկ բերդի սահմաններում:

Սեբեոս պատմիչը հավաստացնում է, որ տակավին Թեոդորոս Ռշտունիի օրով արաբ զինվորները հաստատվեցին Առբերանի գավառում: Բյուզանդական Մավրիանոս զորավարի դեմ Ռշտունի իշխանը որպես թե խնդրած էր արաբներից օգնական զորք և Մավրիանոսին վանելուց հետո բնակեցրել էր յոթն հազար արաբ զինվորներ Առբերանի և Աղիովիտ, այսինքն՝ այն շրջանում, ուր ոտ դրին կայսիկ և ուքմանիկ ցեղերը:

Դժվար թե Ռշտունի իշխանի ժամանակակից արաբական գաղութը հարատևած լինի մինչև կայսիկների գալուստը: Հավանորեն, երբ Ռշտունուց հետո Հայաստանը նորեն Բյուզանդիոնին անցավ, արաբները հեռացան կամ ոչնչացան: Նրանց մասին խոսք չկա հետագա դարերի շարժումների ժամանակ:

Յամանիկ և նիզար ցեղերը բերել էին իրենց նոր բնակավայրը իրենց հին փոխադարձ ատելությունը և թշնամությունը: Ի՞նչ գժտություններ էին ծնել նրանց մեջ, հայտնի չէ: Հավաստի է միայն այն, որ նույն Եզիդ իբն Մազիադ ալ Շայբանի, որ նիզարներին բերել էր Հայաստան, նորեն կուսակալ գալով, մերձ 799 թվին, ստիպված էր մեղմացնել և հաշտեցնել նիզար և յաման ցեղերը:

Այս տեղեկությունները ստույգ են, որովհետև ծագում են արաբ Յակուբի մատենագրից, որ երկար տարիներ ապրել է Հայաստանում և քաջածանոթ է տեղական պատմությանը[1]:

Այսպես, ուրեմն, Հարուն ալ Ռաշիդի օրով (786-809) երեք հաջորդական ոստիկան բերեցին Հայաստան երեք ցեղերից զանգվածներ, նիզար, ռաբիա և մուդար:

Թվում է, որ հոսանքը չդադարեց և հետևյալ դարում: Նույն Եզիդի որդին Խալիդ երկու անգամ ոստիկան նշանակվեց Հայաստան 830 և 843-844 թվերին և երկու անգամն էլ իր պաշտոնատեղին եկավ ռաբիա ցեղի բազմությամբ: Սրանց մի մասը, հավանական է, մնացած լինի երկրում: Նրան է վերագրվում Գանձակ քաղաքի շինությունը, որ պետք է հասկանալ վերաշինության մտքով[2]: Անբնական չէ, որ նոր քաղաքում արաբ բնակչություն թողած լինեն:

Տխրահռչակ Բուղա զորավարը ևս իր հետ արաբ գերդաստաններ էր բերել, ինչպես վկայում է Թովմա Արծրունին. «սկսան այնուհետեւ աներկիւղ համարձակութեամբ սփռել տարածանել ի վերայ երեսաց երկրիս ամենայն

---

[1]**Marquart,** Osteuropäische und Ostasiatische Streifzüge, p. 453.

[2] **Մովսես Կաղանկատվացի.** Գ. գլ. 20:

ազգքն տանկաց, որ ելեալ էին զհետ նորա (Բուղայի) ընտանեօք իւրեանց, եւ ձեռնամուխ եղեն բաժանել զերկիրն յինքեանս»[1]:

Ամիդ քաղաքի շայքանի տոհմին հարևան էր մի ուրիշ մուսուլման իշխանական տուն, որ մեր մատենագիրները կոչում են Զորահա, իսկ արաբացիք՝ Զուրարա: Այս տան ոստանն էր Արզն, Աղձնիքի գլխավոր քաղաքը, նրա ձեռքն էր նաև Նփրկերտ (այժմ՝ Մուֆարղին) և Բաղեշ: Շայքան տոհմի հարևանությունը վտանգավոր էր և մշտական սպառնալիք, ուստի Զուրարի որդիք հակամետ էին մշակելու բարի հարաբերություն հայ իշխանների հետ:

Արաբները միակ օտարամուտ տարրերը չէին:

Ութերորդ դարի կեսին **Հունգար** կամ Մաջար ժողովրդյան մի հատված, ճեղքելով կովկասյան շղթան, եկավ հեռավոր հյուսիսից և հաստատվեց Ուտյաց աշխարհի սահմաններում: Դրանք հայտնի են մեր մատենագիրների մոտ Սևորդիք անունով: Սակայն, հաջորդ IX դարում սրանք արդեն ձուլվել էին հայերի հետ և ավելի դաշնակից էին ընդդեմ արաբների, քան թշնամի:

Իններորդ դարի կեսին զորավար Բուղա բաց արավ Դերբենդի պահակը և 300 ընտանիք **խազար** ժողովրդից բերեց և բնակեցրեց Շամքորի շրջանում: Իսկ Դարիալի (Ալանաց դռռն) մոտերքից բերեց նույնքան օս ընտանիք և հաստատեց Դմանիս[2]:

Կարևորը և վտանգավորը, սակայն, արաբ բնակչությունն էր, թե՛ քանակով, և թե՛ քաղաքական արժեքով: Քաղաքները, երկրի այդ զարկերակները, նրանց ձեռքն էին: Եվ որովհետև քաղաքները կապված էին միմյանց կանոնավոր ճանապարհներով, ուստի արաբ գաղթականությունն ավելի սերտ և կազմ միություն էր, քան անջատ և աննատույց ամրոցներում փակված նախարարական ուժերը:

Ղևոնդ Վարդապետը հիշում է **արքունի պողոտա,** որով հասկանալու է պետության կողմից խնամված ճանապարհ: Ոստիկանական մայրաքաղաքից, Դվինից, մի շարք գծեր տանում էին դեպի երկրի ծայրերը:

Դվին, Մանազկերտ, Արճեշ, Խլաթ:

Դվին, Նախճվան, Հեր, Արտավիլ:

Դվին, Սիսական, Կաղանկատու, Պարտավ:

Դվին, Բագարան, Կարին:

Պարտավ միացած էր նաև կարևոր կենտրոնների՝ Թիփլիսի, Դերբենդի, Վարդանակերտի և Արտավիլի հետ:

---

[1] **Թովմա Արծրունի**, Գ, 5, էջ 170 (Կ. Պոլիս, 1852):

[2] **Brosset**, Histoire de la Géorgie, I, 266.

Հայկական բարձրավանդակի երկու նշանավոր դռները, Խլաթ և Նախճավան, բաց էին և դյուրին էր ի դեպ հարկի զորամասեր հանել Ատրպատականի և Միջագետքի բանակներից և շարժել երկրի ներսը:

Մոռանալու չէ նաև, որ քաղաքացի արաբները լավ կազմակերպված էին: Յուրաքանչյուր քաղաք ինքնավար համայնք էր հատուկ ազգապետի և դատավորի առաջնորդության տակ: Իսկ հողատեր բազմությունները, ինչպես կայսիկ և ուքմանիկ ցեղերը, հաստատեցին իշխանական տներ: Կայսիկների իշխանական տոհմը կոչվում էր Ջահապ, արաբերեն Ջահաֆի (որ իսկապես իրանական Շահապն է), սկիզբն առնելով այն անձից, որ փեսայացավ Մամիկոնյանց:

Օտարամուտ համայնքները բարեկամ չէին տեղական շահերի: Նրանք պտուտակներ էին պետության վարչական մեքենայի և պատրաստ էին ամեն կերպ պիտանի լինել երկրի արաբ պաշտոնեության: Երբ խուժում էին արաբական զորքերը, նրանք էին առաջնորդում: Եթե հարկավոր էր ամբաստանել կառավարության առաջ որևէ անախորժ հայ իշխան, հոժարակամ վկաները դարձյալ տեղացի արաբ բնակիչներն էին: «Տաճիկք Հայաստանեայց, որ բնակեալ էին ի կողմանս աշխարհիս առաջնորդէին Բուհայի ի մուտ և ելս աշխարհիս», - գոչում է Թովմա Արծրունին: «Ամբաստան յոյժ լինէր (Աբուսեթ) զԱշոտոյ հանդերձ թոթովք Տաճկաց որք էին ի կողմանս Հայոց»,- վկայում է դարձյալ նույն պատմագիրը:

Արաբ գաղութները կատարյալ որոգայթներ էին, լարած երկրի սրտում (2): Առաննձին կեցվածք ու քայլվածք, առանձին շարժ ու ձև էր հարկավոր հայ ղեկավար ուժերի կողմից այն կատաղի պայքարում, որ սկսվեց Հայաստանում ընդդեմ արաբական բռնության իններորդ դարու սկզբում և որ նույն դարու վերջում հանգելու էր քաղաքական ազատության:

## II

Աշոտ Մսակերն էր այն մեծ անձը, որ իր եղբոր Շապուհի հետ հանեց երկիրը փխատ և լքված վիճակից և մեծագործ հիմնադիրն եղավ նոր և լուսավոր շրջանի:

Սմբատ սպարապետի, 775 թվի զոհերից մեկի, որդիքն էին: Երկար ժամանակ թաքուն էին անհայտության մեջ: Արդյոք պատա՞նդ էին ամիրապետի արքունիքում, թե ապաստանել էին հեռու Սպեր գավառը, խուսափելով արաբների վրեժխնդրությունից, և խոհուն լռության մեջ պատրաստվում էին առաջիկա պայքարին: Նրանց հորեղբայր Վասակը նմանապես քաշվել էր Տայք, որտեղից հիմը պիտի դներ Վրաց քաղաքական վերածնունդի:

Աշոտը կոչվում է Մսակեր զուցե այնպես, ինչպես Արծրունի իշխաններից մեկը կոչվում էր Կովակեր: Հնարավոր է նաև, որ հակապահեցողական

ազատամտության արդյունք է այս հորջորջումը: Հայտնի է Աշոտի հարաբերությունը Խառանի եպիսկոպոս Թեոդոր Աբիկուրայի հետ կրոնական խնդիրների առթիվ:

Աշոտի առաջին գործը եղավ նոր և ապահով ոստանի հոգսը: Բագրատունյաց ընկել դարանը Դարոյնքն էր, այժմյան Բայազետը, Կոգովիտ գավառում, Մասիսի ստորոտում: Դարոյնքի ապահովությունը վտանգվել էր և ռազմագիտական արժեքը նսեմացել այն օրից, երբ արաբ ցեղերը, կայսիկ և ութմանիկ, եկել և հաստատվել էին հարևան Հարք և Ապահունիք գավառներում: Մի կողմից սրանք, մյուս կողմից ոստիկանական Դվինը մշտական պահակազորքով, մեջտեղը Դարոյնքն էր երկուստեք հարվածի տակ: Հայրենի մյուս կալվածը՝ Սպեր հեռու էր և անապահով Բյուզանդիայի կողմից:

Դարոյնք և Սպեր, մեկը մոտ Արևելյան մեծ պետության, մյուսը՝ Արևմտյան, Բագրատունի տոհմի երկու ոտներն էին, ամուր կռվաններ, որոնց հենվում էին փոփոխակի, նայելով թե ո՞ր պետության դեմ էին ծառանում և որի՞ն ծառայում: Դարոյնք այժմ կորցրել էր իր նշանակությունը հիշյալ պատճառով:

Տեսանք, որ 785 թվին մեռավ Խազրաց դեմ պատերազմելիս Ներսեհ Կամսարական: Այնուհետև Կամսարական իշխաններ չեն հիշվում: Պետք է ենթադրել, որ տոհմը սպառվել էր: Աշոտ Մսակերն օգտվեց այս հանգամանքից և Կամսարականների ժառանգներից գնեց Արշարունիքի մի մասը, ուր Բագարանն էր, և հաստատվեց այնտեղ:

Անակնկալ խոչընդոտ: Արշարունիքի մի մասը Արտազերս հոչակավոր ամրոցով պատկանում էր Մամիկոնյաններին: Այստեղ էր ամրացած Մուշեղ Մամիկոնյան իր ընտանիքով, Բագրևանդի ճակատի հերոսը: Արաբ Ջահապ իշխանը, այն, որ ամուսնացել էր Մուշեղի դուստրերից մեկի հետ, «յափշտակեալ էր մասն ինչ յԱրշարունեաց եւ խորհէր տիրել ի ձեռն կնոջն բոլոր աշխարհին»:

Ջահապ եկվոր արաբ ցեղերի պետն էր, որոնց պատճառով Աշոտ իր հայրենի ոստան Դարոյնքից քաշվել էր Բագարան: Այս անախորժ հարևանությունն այժմ հետապնդում էր նրան, որ անհանդուրժելի էր: Աշոտ, իր եղբոր Շապուհի հետ, ընդդիմացան Ջահապի հավակնության: Ոչ միայն տիրացան Արշարունիքին, այլև «ելեալք զկողմամբքն Շիրակայ հարին զզօրսն Իսմայէլի, որ անդ եւ գրաւեցին յինքեանս զՇիրակ եւ զԱշոցք եւ զգաւառն Տայոց»[1]:

Ասել է, թե Բագրատունի եղբայրները ձեռք բերին Ախուրյանի ամբողջ հովիտը և Տայք, և քանի որ Դարոյնք ևս չթողին, ուրեմն նրանց երկիրը տարածվում էր Կոգովիտից մինչև Սպեր: Այս հաջողության համար է, որ Աշոտ կոչվում է նաև **քաջ**:

---

[1] **Վարդան,** ԽԱ (= Շապուհ Բագրատունուց):

Ուղիղ հարյուր տարի առաջ Աշոտի նախնիքներից մեկը, Սմբատ Բյուրատյան, թողել էր Դարոյնք և հաստատվել Տայքի Թուխարք բերդում, «որպէս զգուշութիւն ի Իսմայելացւոց»[1]:

Կայսիկ և ութմանիկ արաբները ցանկալի հարևաններ չէին բնավ:

Գնունյաց տունը, որ ապրում էր Աղիովիտ գավառում, շուտով զգաց նոր դրացիության դառնությունը և դիմեց Աշոտին: Հազար մարդով Աշոտ մտավ Աղիովիտ, հանեց Գնունյաց տոհմը, տարավ բնակեցրեց Տայք:

Այս կտրուկ միջոցը բացատրելու է նրանով, որ Գնունիք նեղվում էին ոչ միայն հարևան արաբացիներից, այլև արաբ իշխանությունից: Մոռանալու չէ, որ նրանք ևս մասնակցել էին Մամիկոնյանց ապստամբության ի դեմս Վահան Գնունու, որ կոչվում էր Դաշնակ (երաժի՞շտ):

Նույն ժամանակները տեղի ունեցավ նաև Շապուհ և Համամ Ամատունյաց իշխանների գաղթը 12 հազար մարդով դեպի Տայք, այնտեղից Պարխար լեռները: Այրուձին և իշխանները մտան բյուզանդական բանակը, իսկ հասարակ ժողովուրդը հաստատվեց այնտեղ, որ ցայժմ էլ կոչվում է Համշեն, այսինքն՝ Համամաշեն, Շապուհի որդու Համամի անունով: Եթե ստույգ է, որ Ամատունիք ապրում էին Արտազի շրջանում, անհավանական չէ ընդունել, որ այս չուն ևս արդյունք էր նույն վատ հարևանության մի կողմից կայսիկ ցեղի, մյուս կողմից Դվինի արաբների:

Աշոտի և Շապուհի առաջին նվաճողական փորձերը հաջողեցին: Հանգամանքները նպաստավոր էին: Հայ շարժման հետ զուգաքար ընթանում էր պարսկականը: Հուզումները բազմանում էին և պատրաստում էին մեծ փոքրիկ: Աբբասյան հարստության հաղթանակը կատարված էր պարսիկ ուժերի օժանդակությամբ: Իրանական ազդեցությունը աճում էր հետզհետե:

Առաջին խռովությունն ընդդեմ Օմմայան տան ի նպաստ Աբբասյանների, որ տեղի ունեցավ Խորասանում, ոմն Աբու-Մուսլիմ պարսիկի գործն էր: Հարուն ալ Ռաշիդի օրով Աբու-Մուսլիմի քարտուղարը Ատա ալ Մոկանա խմորեց քաղաքական մեծ շարժում ընդդեմ արաբների, թաքնվելով կրոնական վարագույրի ետև:

Ատա հռչակեց ինքն իրեն որպես մարմնացյալ աստված: Նրա գործունեության ասպարեզը արաբական Հայաստանի արևելյան ծայրերն էին ավելի, քան բուն Ատրպատականը: Փայտակարանն էր նոր աստուծու ընտրյալ վայրը, արաբական Բայլական քաղաքը, որ գտնվում էր Պարտավից 14 փարսախ հեռավորության վրա դեպի Երասխի ուղղությամբ:

Արաբ փորձառու զորավարները եկան պատժելու օտարոտի աղան-

[1] Ղևոնդ, էջ 26:

դավորին: Չկարողացան: Վարդանակերտի մոտ ճակատեցին, հաղթեց Ատա ալ Մոկանա և գնաց ու առավ Քալաք ալ Կիլաբ (շների բերդ) կոչված ամրոցը, որ Սյունիքի սահմաններում է որոնելու: Պարտավից նոր զորք եկավ, դարձյալ ձախողեց և զորապետները ընկան կռվում:

Ատա ալ Մոկանա խրախուսված արշավեց Դվին և պաշարված պահեց չորս ամիս: Եվ դարձավ Բայլական:

Հարուն ալ Ռաշիդ ղրկեց իր երկու նշանավոր զորավարներին, մեզ ծանոթ Եզիդ իբն Մազիադ ալ Շայբանի և Յահյա ալ Հարաշի: Մեկը մտավ Ատրպատական 12 հազարանոց գնդով, մյուսը՝ Հայաստան 10 հազար մարդով: Երկուսը միացան հարձակվելու աղանդավորի վրա: Սակայն Ատա մեռել էր արդեն և նրան հաջորդել Բայլականցի ոմն Սական, աղանդավորի մերձավոր բարեկամը:

Առաջին անհաջողությունից հետո բայլականցիք լքեցին ապստամբներին և ընդունեցին քաղաք ամիրապետի զորավարներին: Սակայն փախավ Քալաք ալ Կիլաբ ամրոցը, բայց հետո ստիպվեց զենքը վայր դնել և ներում խնդրել խալիֆի զորավարներից: Եզիդ իբն Մազիադ բարվոք համարեց ղրկել նրան ամիրապետին: Երկիրը խաղաղեց:

Խառնակ դրությունից օգտվելով անձնական հաշիվներ էին հարդարում իրար հաջորդող կուսակալները և քաղաքապետները: Հյուսիսային անհանգիստ հարևանները՝ խազարները և ծանարք ևս գլուխ բարձրացրին և պատեհ առիթ համարեցին հարավ սուրալու ավարառության նպատակով:

Այս պայմաններում, երբ խալիֆի մտահոգությունը կենտրոնացած էր այլուր, Աշոտ և Շապուհ կարող էին հարվածել մուսուլման Ջահապին, առանց վախենալու խալիֆի բարկությունից:

Ռաշիդի մահից հետո ծագեցին գահակալական աղմուկներ: Նրա ցանկությունն էր բաժանել պետությունը իր երեք որդիների մեջ: Սակայն Ամին, որ ծնված էր իշխանուհի մորից, հաջողեց գրավել գահը (809-813): Մամուն սպանեց նրան և խլեց իշխանությունը: Նոր խռովությանց դուռը բացվեց:

Նոր գահակալը Հայաստանի և Ատրպատականի կուսակալությունը հանձնեց Տահիր իբն Մուհամմատ աս Սանանի: Այդ ժամանակ Հայաստանում կուսակալ էր Իսհակ բին Սոլիման ալ Հարաշի, նշանակված սպանված ամիրապետի կողմից: Սա չանսաց նոր խալիֆի հրամանին և չուզեց զիջանել երկիրը նորեկ կուսակալին: Կուսակալական հուզումներ բարձրացան նոր և հին խալիֆի, նոր և հին կուսակալների շուրջը:

Տահիր աս Սանանի Ատրպատականի Վարդանակերտ կամ Վարթան, ինչպես արաբներն են ասում, քաղաքը ժամանելով, բանակցության մեջ մտավ հայ սպարապետների և իշխանների հետ և սրանք ընդունեցին Մամունի իշխանությունը: Հավանորեն, խոսքը Աշոտի և Շապուհի մասին է:

Սրանց հակառակ, Իսհակ բին Սուլիմանի կողմը բռնեցին այն քաղաքները, որ աղանդավոր Ատա ալ Մոկանայի առաջնորդությամբ ապստամբել էին խալիֆի դեմ, և ամենից առաջ Բայլականը: Իսհակի կուսակից հայտարարեցին իրենք իրենց նաև Ներսեհ և Աբդ ալ Ռահման տեղական իշխանները[1]:

Ոստիկանական մայրաքաղաք Պարտավ Տահիրի կողմն էր: Ուստի Իսհակ բին Սուլիմանը հարձակվեց Պարտավի վրա, բայց պարտվեց Տահիրի ղրկած զորքերից և փախավ, թողնելով իր որդուն թշնամու ձեռքին գերի:

Ահա այդ ժամանակ է, որ Տահիրի դեմ դուրս եկավ Աբդ ալ Մելիք ալ Ջահաֆի, որ ոչ այլ ոք է, բայց եթե որդի մեզ արդեն ծանոթ Ջահապ իշխանի, հակառակորդի Աշոտի և Շապուհի:

Բայլականցիք քաջալերված արշավեցին Պարտավի վրա և պաշարեցին այնտեղ Տահիրին: Շուտով օգնություն հասավ ամիրապետից: Տահիր ազատվեց: Ինչ որ զարմանալի է, Աբդ ալ Մելիք ալ Ջահաֆի պատիժ չկրեց իր ըմբոստության համար, այլ ներման արժանացավ: Կարգը վերահաստատվեց երկրի մեջ:

Այս թանկագին տեղեկությունները, որ պարտական ենք նույն արաբ Յակուբի մատենագրին, լույս են սփռում Վարդան պատմիչի հակիրճ խոսքի վրա, որ քաղված է Շապուհ Բագրատունու, անցքերին ժամանակակից հեղինակի, պատմական երկից. «Իսկ Ջահապն ապստամբեալ յիւրմէ իշխանէն գայ նստի ի Դուին բռնութեամբ որդւով իւրով Աբդլայիւ»[2]:

Քիչ հետո պատմագիրը դառնալով Ջահապին հաղորդում է, որ Ջահապի տունը զորացավ Դվինում այնքան, որ հինգ հազար զորքով կամեցավ գնալ Տարոնի վրա, որ պատկանում էր Աշոտ իշխանին, այսինքն՝ Մսակերին: «Ողջախոհ եւ քաջ» Աշոտ առանց սպասելու զորքերի հավաքման, երկու հարյուր ձիավոր և երեք հարյուր հետևակ մարդով հարձակվեց Ջահապի որդու վրա, կոտորեց նրա զորքերից երեք հազար հոգի և ավարի տվավ բանակը: Միևնույն ժամանակ Շապուհ, Աշոտի եղբայրը, ասպատակեց Դվինի կողմերը և ավարով դարձավ: Մինչ քաղաքից դուրս են տալիս զորքերը հետապնդելու Շապուհին, քաղաքացիք հարձակվում են Աբդ ալ Մելիքի վրա և սպանում: Լքված զորքերը ցրվում են:

Ջահապ իշխանը հաստատված էր Ապահունիք: Մամունի գահակալության առթիվ ծագած ներքաղաքական հակառակություններից օգտվելով Ջահապի որդին, Աբդ ալ Մելիք, ձեռք էր դրել Դվինի վրա, կամենալով

[1] Սրանց հետ էին նաև Օմար և Հազուն, որ թերևս մի անձի անուն է և խանգարված: Գուցե կարդալու է Համզա Արզուն, այսինքն՝ Համզե Արծրունի: Հայտնի է, որ Աշոտ Արծրունին, Բուղայի զոհերից մինը, կոչվում էր որդի Համզայի: Թերևս, խոսքն այս անձի մասին է:

[2] **Վարդան**, էջ 77:

ապահովել իր բնիկ կալվածը Ապահունիք, նաև արևմտյան կողմից, ուր ընկնում էր Տարոն նույն Արածանի գետի հովտում: Աբդ ալ Մելիք աչք է ածում Տարոնի վրա: Բայց չի հաջողում և ինքն էլ զոհ է գնում իր բռնության:

Այստեղից հետևում է, որ Աշոտի և Ջահապի մրցությունը՝ տիրանալու հայ երկրին, շարունակվում էր և ներքին խուլ մաքառումը պայքում էր երբեմն պատերազմով: Երևում է նաև, որ բախտի ժպիտը Ջահապի երեսին չէր, և որ Աշոտ հաջողել էր տիրանալ Տարոն գավառին:

Հաջորդ հերթական ընդհարումը Աբդ ալ Մելիքի ժառանգ Սևադայի հետ էր: Հաշիմից հետո, կուսակալ է գալիս Հատիմ իբն Հարթամ իբն Այան: Քիչ հետո նա լսում է, որ Մամուն ամիրապետը սպանել է իր հորը՝ Հարթամին: Մամուն հաղթել էր իր եղբորը շնորհիվ պարսիկների: Նրա արքունիքում զորացել էր պարսկական ազգային հոսանքն ընդդեմ արաբական կուսակցության: Հարթամի մահը վերագրվում էր պարսիկ ազդեցության: Սպանվածի որդին՝ Հատիմ, ապստամբեց խալիֆի դեմ, թողեց Պարտավ քաղաքը և քաշվեց Վրաստան: Հոր սպանությունը տեղի ունեցավ 201 հիջրի = 816 - 817 թվին: Ապստամբությունն, ուրեմն այս ժամանակներն էր, հավանաբար հետևյալ 817-818 թվին:

Հատիմ կոչ է անում երկրի իշխաններին և «հայ ժողովրդի պետերին», այլև բանակցության մեջ է մտնում Բաբեկ, հայ հեղինակների Բաբան, աղանդավորի հետ, որ Խուռամյան կոչված կրոնական շարժման գլուխն անցած սպառնում էր արաբ իշխանության նոր և վտանգավոր ցնցումով:

Ապստամբ Հատիմի տեղ եկավ կուսակալության պաշտոնով Յահյա իբն Մուադ 204 հիջրի = 819-820 թվին քանի անգամ ճակատեց, բայց միշտ անհաջող: Օգնական զորքով ղրկվեց խալիֆ Մամունի կողմից Իսա իբն Մուհամմադ 205 հիջրի = 820-821 թվին: Սա ևս պարտվեց և թողեց Ատրպատականը, ուր տեղի ունեցան կռիվներ ընդդեմ Բաբեկի և եկավ Հայաստան:

Այստեղ Սևադա իբն Աբդ ալ Համիդ ալ Ջահաֆի նույնպես ըմբոստացած էր կենտրոնական իշխանության դեմ: Իսա իբն Մուհամմադ խոստանում է նրան տալ Հայաստանի կուսակալությունը, միայն թե ետ կենա չար մտքից: Սակայն Սևադա խուլ մնաց: Իսա ելավ նրա դեմ և ընկճեց զենքի ուժով[1]:

Սրանից հետո է, որ Սևադան ընդհարվեց Աշոտի և Շապուհի հետ: «Իսկ Սեւադա ոմն ի տանէ Ջահապայ չորիւք հազարօք կռուեալ ընդ Աշոտոյ եւ ընդ եղբօր իւրում Շապհոյ, մեռաւ Շապուհ ի պատերազմին եւ զկնի երկուց ամաց մեռաւ Աշոտ ի տան իւրում եւ ա՛ռ զիշխանութիւնն Սմբատ որդի նորա»:

Ասողիկի վկայությամբ Աշոտ իշխեց քսան տարի: Աղբյուրը Շապուհ

---

[1] **Յակոբի,** II, 562; **Marquart**, Streifzüge, էջ 458:

Բագրատունին է, ուրեմն, վստահելի: Հարուն ալ Ռաշիդ մեծ արշավանք սկսեց Բյուզանդիայի դեմ 806 թվականին[1]: Անհավանական չէ, որ իր թիկունքը ապահովելու համար Հայաստանում, իշխանությունը հանձնած լինի Աշոտին հենց նույն տարին: Այս հաշվով Աշոտը մեռած պիտի լինի, քսան տարի իշխանությունից հետո 826 թվին: Նրա եղբայր Շապուհը մեռավ երկու տարի առաջ Սևադայի դեմ կռվելիս, ուրեմն կռիվը և մահը տեղի ունեցան 824 թվին:

Դարձյալ Ասողիկից գիտենք, որ Աշոտի որդին Սմբատ պատանդ էր դրված խալիֆի դրան և վերադարձավ հայոց 275 թվին, որ է Քրիստոսի 826 թիվը: Եթե իշխանի դարձը կապ ունի հոր մահվան հետ, ապա իրավ է, որ Աշոտ մեռել է նույն տարին:

Որպեսզի Հարուն հիմ ունենար Աշոտին իշխանության կոչելու 806 թվին, պետք է, որ նա արդեն անուն հանած և ազդեցիկ անձն լիներ երկրում: Սխալ չէր լինի ենթադրել, որ Աշոտի առաջին գործերը, մանավանդ Ջահապի դեմ մղած կռիվը Արշարունիքի համար, առաջ են, քան 806 թիվը և կատարվել են, ինչպես հիշեցինք վերև, Ատա հերձվածողի շարժման նպաստավոր մթնոլորտում:

Վարդանի ասելով, Աշոտ և Շապուհ «հասարակ բաժանեցին զհայրենիս իւրեանց»: Շապուհին բաժին էր ընկել Սպեր գավառը, ուր 837 թվին Թեոփիլոս կայսրը նրա որդի Աշոտին պատրկության պատիվ տվավ: Տարոնը Աշոտի իշխանության մեջ էր:

Երբ Ջահապը իր որդի Աբդ ալ Մելիքի հետ բռնացել էր Դվինում, Վրաց երկրի իշխան Աշոտը, որ կյուրապաղատության պատիվ ուներ, Լևոն Հայկազն (813-820) կայսրին դիմեց օգնության ընդդեմ արաբ իշխանների, բայց չհաջողեց: Սա Մսակերի ազգակիցն էր, նրա հորեղբոր թոռը և իշխում էր Կղարջքում:

Արդյո՞ք սրա խեքալը Դվինի բռնավորի վրա արենակցական պարտք էր հանդեպ Մսակերի, թե որևէ հավակնություն ուներ մերձակա հողերի վրա: Հավանական է առաջին ենթադրությունը, քանի որ Մսակերը հաստատված էր Բագարան: Աշոտի միջամտությունը նշան է, որ տոհմական կապերը տակավին սերտ էին Կղարջքի և Շիրակի Բագրատունիների մեջ:

Աշոտ Մսակեր և Շապուհ տիրացել էին ոչ միայն Տարոնին, այլև Մոկաց աշխարհին: Թովմա Արծրունին գիտե Սմբատ և Մուշեղ Մոկաց իշխեցողք: Սմբատից առաջ թվում է, թե նույն գավառի իշխան էր Մսակերի որդի Սահակը:

Ասորի մատենագիր Դիոնիսիոս Թելմահարացի Հակոբիկ եկեղեցու

---

[1] **Theophanes**, էջ 747-748:

պատրիարք (812-845) իր պատմական երկում, որից միայն քաղվածներ են մնացել Միքայել Ասորի ժամանակագրի մոտ, հաղորդում է հետաքրքիր միջնադեպ պարսիկ խուռամյան կոչված աղանդավորական շարժումից, ուր հիշատակվում է Իսհակ որդի Աշոտի, որպես իշխեցող Կորդվաց աշխարհին սահմանակից երկրի, որ կարող է լինել Մոկաց աշխարհը:

Խուռամյան շարժումը շարունակություն էր Ատա ալ Մոկանա աղանդավորի գործի, ավելի սուր կերպարանք ստացած: Քաղաքական և անգամ ընկերվարական հույզեր էին կրոնական կեղավորումով: Կարելի է ասել, որ խուռամյանք այն ժամանակվա կոմունիստներն էին: Քարոզում էին ինչքի և կանանց ընդհանրություն, ժխտելով սեփականության իրավունքը: Հավատ ունեին, որ մի օր իրենցից մի թագավոր է ելնելու, մի Մահդի, որ վստահություն ներշնչելով դեպի իր անձը, պիտի հոչակվի աստված: Ով նրան հավատա, մեռնելուց 40 օր անցած հարություն պիտի առնե և վերադառնա իր ընտանիքը, որպեսզի հետո անհայտանա մի գաղտնի անկյունում:

Հարուն ալ Ռաշիդի վերջին տարիներին երևան եկավ ակնկալված Մահդին, որ երեսին քող ձգած, հոչակում էր իրեն մերթ Քրիստոս, մերթ սուրբ հոգի: Շատ չանցավ և խուռներամ բազմությունը շրջապատեց նոր մարգարեին: Կողոպուտի և ավարի հույսն էր մանավանդ, որ ոգևորում էր շատերին: Մահդի հաստատվեց Կորդվաց լեռներում և սարսափ տարածեց իր շուրջը Ծավդեք և Տուր-Աբդին: Մամուն խալիֆն անգամ երկյուղ էր կրում նրանցից: Քրիստոնյա մի վանք կողոպտելու ժամանակ մեծ հարված ստացան զորավար Հասանից: Մահդի, քողը մի կողմ նետելով, փախավ Աշոտի որդի Սահակի երկիրը: Սահակ բռնեց և շղթայեց կարծեցյալ մարգարեին: Խուռամյանները հարձակվեցին գիշերով Սահակի վրանի վրա ազատելու իրենց թագավորին: Սահակ շտապեց գլխատել Մահդիին և առնելով նրա գլուխը, իր գույքը և ընտանիքը փախուստ տվավ:

Քիչ հետո, երբ Սահակ զորքով գնացել էր կովելու արաբների դեմ, Խուռամյանք ուզեցին Սահակի ընտանիքը և որդիները բռնել: Գաղտնիքը բացվեց: Սահակի կնոջ եղբայրը, որ կրոնավոր էր, ժողովրդյան բազմության հետ մտավ ամրոցը, ուր Սահակի ընտանիքն էր, դիմադրելու թշնամու հարձակման: Մեծ հույս ունեին բարեպաշտ կրոնավորի աղոթքի վրա: Սահակի կինը ստնդի մանուկը գրկին աղաչում էր Աստուծուն, որ գոնե անմեղ մանկան համար օգնե և փրկե վտանգից: Պաշարողները բերդի դուռն այրեցին և ներս խուժեցին: Մի ուրիշ կրոնավոր նիզակը ձեռքին առաջ նետվեց և մի հարվածով տապալեց նրանց առաջնորդին: Սահակի կինը վճռել էր մեռնել, քան ընկնել ամբարիշտների ձեռքը: Ամբողջ գիշերը չքնեց և առավոտյան զենքի պահեստից առավ մի ոսկեզօծ թուր, հուսալով, որ նրա փայլի վրա կգան թշնամիները և կսպանեն իրեն: Փորձանքն անցավ: Ամ-

բոխը՝ անուշադիր տիկնոջ սկսեց կողոպուտի ետևե լինել և հետապնդել փախչողներին: Մինչ այս, մինչ այն, վրա հասան Սահակի մարդիկը, ապա ինքն իր բանակով, և հալածեցին թշնամիներին:

Նույն պատմագիրը հավատացնում է, որ Մահդիից հետո խուռամյան ապստամբների պետը եղավ մի ոմն Հարուն և նրա սպանությունից հետո Բաբեկ[1]:

Վերև տեսանք, որ Բաբեկի մասին առաջին անգամ լսվում է Հատիմ իբն Հարթամի ապստամբության ժամանակ 816-817 թվին: Մովսես Կաղանկատվացու վկայությամբ, Հայաստանի սահմաններում, Սյունիքում, երևում է Բաբան (այսինքն՝ Բաբեկ) 270 հ. = 821 թվին: Եթե արդարև այն անձը, որ սպանվեց Սահակի ձեռքով, Բաբեկի նախորդներիցն է, ապա սպանությունը տեղի է ունեցել 821, գուցե և 817 թվից առաջ:

Ո՞վ է Մահդին և իրոք նրա բնակավայրը Կորդվաց լեռներումն է՞ր, թե Ատրպատական, ինչպես հավատացնում են արաբ մատենագիրները, դժվար է ասել:

Մեր նպատակի համար բավ է այսքանը, որ Սահակի միջնադեպը դասելու է հավանորեն 820 թվից ոչ ուշ: Կորդվաց աշխարհի մոտերքը իշխում էր այդ ժամանակ Սահակը, Աշոտ Մսակերի որդիներից մեկը: Խոսքը Մոկաց գավառի մասին է, որ իրապես սահմանակից է Կորդուքին և Բագրատունյաց ձեռքին էր:

Այս Սահակի որդին պետք է լինի Սմբատ Մոկաց իշխեցողը, որ Բուղայի ձեռքից ազատեց Վասպուրականի գերիներին[2]: Սա Բուղայի բարեկամն էր: «Յոյժ սիրեցեալ եղեւ ի զօրավարէն», ուստի և շատերը շփոթում են Մսակերի որդու և հաջորդի՝ Սմբատ-Աբլաբասի հետ, մինչդեռ սրա մասին առաջին անգամ խոսում է պատմագիրը, երբ սկսում է պատմել Բուղայի գալստյան երկրորդ տարվան անցքերը[3]:

Սմբատ Մոկաց իշխեցողի որդին է թերևս Մուշեղ Մոկաց **իշխեցող** (և ոչ իշխեցողք, ինչպես տպված է), որ հիշվում է Թովմա Արծրունու մոտ և սպանվեց ծեր հասակում Անձևացյաց Գուրգեն իշխանի ձեռքից[4]:

Բյուզանդական սահմանների վրա հաստատված էին Մսակերի եղբայրը Շապուհ Սպերում և Մսակերի հորեղբոր թոռը (կամ որդին) Աշոտ Կյուրապաղատ Կղարջքում: Շապուհ ընկավ, ինչպես տեսանք, Սևադայի դեմ կռվելիս 824 թվին, թողնելով իշխանությունը իր Աշոտ որդուն: Սրա սերնդից

[1] **Michel le Syrien** (éd. Chabot), III, էջ 50:

[2] **Թովմա Արծրունի**, Գ, 2, էջ 154, 155:

[3] Նույն, Գ, 9:

[4] Նույն, Գ, 17 և 19:

էր Շապուհ Բագրատունի պատմագիրը: Հավանական է, որ առաջին Շապուհը, Մսակերի եղբայրը այն Շապուհ Բագրատունին է, որի պատվերով Ղևոնդ Վարդապետ գրեց իր պատմությունը:

Շապուհի դրացին էր Աշոտը, որ Լևոն Հայկազն կայսրից կյուրապաղատության պատիվ ստացավ: Սրա պապ Վասակ Բագրևանդի խռովության ժամանակ քաշվել էր Տայք և Կղարջք: Աշոտ կարողացավ ընդարձակել իր իշխանությունը և «տիրեաց ի Կղարջաց մինչեւ ի Տփխիս լեռնակողմամբ հանդերձ»[1]: Աշոտ փորձեց իր ազգակիցներին՝ Մսակերին և Շապուհին օգնել ընդդեմ Ջահապի, երբ սա Դվինը գրավել էր:

Ըստ «Վրաց տարեգրքի», Աշոտ սպանվեց Քրոնիկոնի 46, այսինքն՝ (780 + 46)= 826 թվին: Մսակեր ևս մեռավ նույն տարին:

Աշոտ Մսակեր ուներ չորս որդի և երկու դուստր: Ավագ որդիները Դավիթ և Բագարատ հաստատվել էին Տարոն, իսկ Սահակ և Մուշեղ՝ Մոկաց աշխարհում: Մուշեղ Մոկաց իշխեցող, որոշ չէ թե Մսակերի՞ որդին է, թե Սահակի: Մսակերի կրտսեր որդին Սմբատ ժառանգեց կենտրոնական իշխանությունը:

Հին աշխարհին ևս ծանոթ էին քաղաքական ամուսնությունները: Մսակեր իր մեկ դուստրը տվավ կնության Աղձնիքի հայտնի մուսուլման իշխան Մուսեին, Զորահայի որդուն: Այս ծայրագավառի իշխանությունը դժվար հարվածելի էր և մշտական վտանգ հարևան Տարոնի համար: Աշոտ հույս ուներ խնամիական կապերով սանձելու և չեզոքացնելու հնարավոր սպառնալիքը: Վարդանը հիշատակում է, որ Մսակերի որդիք «Դաւիթ եւ Սահակ եւ Մուշեղ եւ Բագարատ առեալ զմայրն իւրեանց չոգան ի Նփրկերտ առ Խալիֆն ամիրայ, սիրով ընկալեալք ի նմանէ»[1]:

Նփրկերտ, ինչպես Բաղեշ, մտնում էին Մուսեի իշխանության մեջ: Արդյոք ընտանեկան այց էր մոր կողմից իր դստեր, թե ավելի լուրջ պատճառ կար, ինչպես կարելի է ենթադրել որդիների ուղեկցությունից:

Աշոտի մյուս դուստրը, Հռիփսիմեն, ամուսնացավ Արծրունյաց իշխանի հետ, որի անունը մեր մատենագիրները չեն պահել: Հռիփսիմեն երեք որդի ունեցավ, Աշոտ, Գուրգեն և Գրիգոր: Արաբները Աշոտին անվանում են Աշոտ իբն Համզե իբն Գագիկ: Ուրեմն Աշոտի հայրը և Հռիփսիմեի ամուսինը Համզեն էր և սա որդի Գագիկի:

Ութերորդ դարու սկզբում, հայտնի են Գրիգոր և Կորյուն Արծրունիք: Աշոտ Կույրի ժամանակ Վահան Արծրունու որդիք, Սահակ, Համազասպ, Գագիկ և վերջինիս զավակները, Համազասպ, Սահակ և Մեհրուժան, նշա-

---

[1] **Վարդան**, էջ 78:

նավոր դեմքեր էին հրապարակի վրա, մարտնչող արաբական բռնության դեմ. թևակից Մամիկոնյան կտրիճներին: 786 թվին հայտնության օրը, մարտիրոսության պսակ ստացան Համազասպ և Սահակ: Արաբ բռնակալի վրեժխնդրությունն էր, որ ճայթեց հետին և դավող ժամին ընդդեմ խռովարար եղբայրների: Մեհրուժանը ուրացավ հայրենի հավատը, «զգենոյր զկերպարան գայլոց» և փրկեց իր կյանքը: Գուցե սիրելի եղբայրների մահն էր այն «մեծ աղէտը», որի համար Մեհրուժան սպանեց Մուշեղ Մամիկոնյանի երկու որդիներին, որ ապաստանել էին Վասպուրական, սպանեց, ուզենալով վրեժ լուծել նրանց հորից, որպես աղետի պատճառից: Նահատակված իշխանների վարքում հիշվում է, որ Մեհրուժան անպատիժ չմնաց: Դավիթ Մամիկոնյան խողխողեց նրան: Դյուրին բան չէր խթել Մամիկոնյաններին:

Մամիկոնյանների անկումից հետո միակ ակնածելի տունը, որ կարող էր մրցել Բագրատունիների հետ Արծրունիք էին: Հեռատեսություն էր Սմբատի կողմից՝ ամուսնական կապերով պահել կասկածելի ախոյանին քաղաքական համերաշխության շրջանում:

Բագրատունի իշխանուհին Հռիփսիմե վերածնեց Արծրունի տոհմը, պարգևելով երեք քաջարի զավակ: Նրանցից Աշոտը եղավ Արծրունիների համար այն, ինչ որ իր պապ Սմբատը՝ Բագրատունիների:

Աշոտ Սմբատը բոլորեց իր կյանքի ընթացքը պատմական խոշոր գործիչի պատասխանատու դերում, և բոլորեց փայլով և փառքով: Արաբական բռնության ծանրագին օրերն էին, երբ Աշոտ հրապարակ իջավ: Երկիրը ավեր, կազմալույծ նյութապես և բարոյապես, լավագույն ուժերը քամված, մնացորդները քաշված ասպարեզից: Հագարացիք սպառսպուռ տիրել բռնել էին Հայաստանյայց, հեծեծում է ժամանակակից պատմագիրը, աշխարհիս մեծամեծները նվազել, իսկ «մնացեալք զօրեալք դադարեալ կային ընդ լծով ծառայութեան նոցա»:

Այս դրությունից հանեց երկիրը Աշոտ, հանեց իր բազուկներով և ծանրախոհ գլխով: Իր օգնականները իր մերձավորներն էին՝ իր ընտանիքը, եղբայրը, չորս որդին, երկու դուստրը, բոլորն էլ ծառայեցին միևնույն գործի: Մի քանի տարվա ընթացքում հաջողեց ամուր դիրք բռնել մայր երկրի սրտում, մի ոտը Շիրակ, մյուսը՝ Տարոն, մի բազուկը դրած Սպերի և Տայքի վրա, մյուսը՝ պարզած դեպի Վասպուրական:

Քաջ և իմաստուն իշխանը շնչավորեց երկիրը, վերականգնեց բեկված հավատը դեպի ապագան, աշխուժեց գործունեության նոր տենդով:

Հաջորդներին մնում էր շարունակել սկսած գործը արքնության մեջ, աչքերը հառած գալիք արշալույսին: Գիշերն անցել էր և վերացող աղջամուղջը խոստանում էր հուսալից պայծառ օրեր:

## III

Բուղայի շահատակությունները տևեցին երեք տարի՝ 852-855 թվականները:

Յուսուփը եկավ Հայոց 300 թ., որ սկսվում է 851 թ. ապրիլի 28-ից, իսկ ըստ արաբական տեղեկության, հիջրի 237, որ գալիս է նույն 851 թ. սկսած հուլիսի 5-ից: Եկած պիտի լինի ուրեմն հուլիսի 5-ից հետո: Նենգությամբ ձերբակալեց Բագարատ իշխանին և գնաց Մուշ ձմերելու: Այստեղ նրան սպանեցին խութեցիք, ըստ արաբական վկայության հիջրի 237 ռամազան ամսին, որ է 852 փետրվար-մարտ: Նրա վրեժը առնելու եկավ Բուղան 852 թ. թվի ամառը, «ի հասանել ամառնային ջերմութեան»[1]: Կռվեց Արծրունի Աշոտ և Գուրգեն իշխանների դեմ, բռնեց նրանց և անցավ ձմերելու Դվինում:

Հաջորդ 853 թվի գարնան ելավ Թիփլիսի և Ծանարքի դեմ և գնաց անցնելու ձմեռը Պարտավ:

Հետևյալ 854 թվին գարնան սկսվեցին պատերազմական գործողությունները Աղվանից իշխանի դեմ: «Եւ եղեւ մօտ ի կատարումն հասանել ամին երկրորդի գալստեան նորա, ել գնաց ի կողմանս Աղուանից»:

Բուղան եկել էր 852 թ. ամառն, հետևապես 854 թվի գարնան մոտ էր լրանալու նրա գալստյան երկրորդ տարին: Աղվանից կռիվները տևեցին ամբողջ տարի, ուրեմն մինչև 855 թվի գարունը, եթե չափազանցություն չէ պատմագրի խոսքը՝ «յերկարեցաւ գործ պատերազմաց սոցա իբրեւ մօտ ի լնուլ ամի միոյ»[2]:

Եսայի ձերբակալությունը, հետևապես, պիտի պատահած լիներ 855 թվին: Նույն տարվա մեջ է նաև մյուս հայ իշխանների կալանավորումը: Սրանց բոլորին ուղի ձգեց դեպի Սամառա, իսկ ինքը «եմուտ ի Պարտաւ ձմերել անդ»:

Բուղայի Հայաստանից մեկնումն ընկնում է այսպիսով 856 թվի սկիզբը:

Սույն 856 տարին համարելու է Աշոտ Բագրատունու իշխանության առաջին տարին:

Բուղան հետ կանչվեց: Նրա փոխարեն ոստիկան եկավ Մուհամետ իբն Խալիդ Շայբանի Բուղայի գալու չորրորդ տարին. «ապա ի չորրորդ ամին եղեւ գալն Մահմետայ Խորթի (կարդա՛ Խալթի) որդւոյ»[3], ուրեմն 856 թվին:

Սա պատվեր ուներ խաղաղացնել երկիրը, ներումն շնորհելով ըմբոստացած ուժերին: Արաբական քաղաքականությունը փոխում էր իր վերաբերումը դեպի հայերը, ընտրելով հաշտության ուղին: Պետք էր օր առաջ վերականգնել անդորրությունը, մեղմել հուզված կրքերը խաղաղ և զիջող միջոցներով: Գերված իշխանների դարձը ևս ուշանալու չէր:

---

[1] **Թովմա Արծրունի,** Գ, 8, էջ 188:

[2] Նույն, էջ 206:

[3] **Մովսես Կաղանկատվացի,** Գ, 20:

Բռնության այս նահանջը մի նշան էր, որ արտաքին վտանգ կա և պետությունը պետք ունի ոչ միայն ներքին խաղաղության, այլև հայերի համակրության: Արդարև, Բյուզանդական բանակն արդեն հասել էր Եփրատ և հրամանատարը ոչ այլ ոք էր, եթե ոչ Պետրոնաս, Թեոդորա կայսրուհու եղբայրը և Մամիկոնյան շառավիղը: Ճիշտ 856 թվին առել էր Սամոսատ և Ամիդ[1]: Պատերազմական գործողությունները շարունակվեցին մինչև 863 թիվը: Մելիտինեի արաբ ամիրան և նրա դրդմամբ պավլիկյան աղանդավորները, բույն դրած այժմյան Դերսիմում, հաճախակի ասպատակությամբ վրդովում էին խաղաղությունը: Կայսերական զորքերը գալիս էին նրանց պատժելու:

859 թվին ինքը Միքայել կայսրը արշավանքի գլուխն անցավ, բայց իսկական հրամանատարը հռչակավոր Վարդասն էր, Պետրոնասի եղբայրը[2]: Երկրորդ անգամ եկավ Պետրոնաս, և հաջողեց հաղթական վերջ դնել պատերազմին 863 թվին: Սույն թվին ընկավ Նփրկերտի (Մուֆարղին) մոտ արաբական զորավարներից Ալի իբն Յահյա ալ Արմանի: 862 թվին հոկտեմբեր-նոյեմբեր ամսին Ալի եկած էր Հայաստան որպես ոստիկան, բերելով իր հետ խալիֆի հրամանը՝ նշանակել Աշոտ Բագրատունուն իշխան իշխանաց: Դարձին Նփրկերտի մոտ ընդհարում ունեցավ բյուզանդական մի գնդի հետ և սպանվեց:

Արաբների պարտությունը նշանակալից էր: Խալիֆայական աստղը թեքվել էր: Թուրք վարձկան գնդերը, որոնք սկզբում մեծ ծառայություն մատուցին ամիրապետներին, հետագայում այնքան ուժ և ազդեցություն ձեռք բերին, որ իրենց սանձարձակության խաղալիք շինեցին արքայական գահը: Մուտավաքիլ սպանվեց 861 թվին իր որդու ձեռքով և թուրք զորքերի թելադրանքով: Այնուհետև խալիֆայական գահը արյունահեղ դավերի առարկա դարձավ: Իրար ետևից արյունոտ ձեռքերով գահ բարձրացան տասն տարվա ընթացքում հինգ հոգի: Մուտավաքիլին հաջորդեց իր որդին Մունտասիր 861-862, հետո եղբորորդին, Մուստային 862-866, և ապա իր որդիք, Մուտազ 866-869, Մուհտադի 869-870 և Մուտամիդ 870-892:

Իսկապես խառնակ շրջան էր, արաբական աչքը չէր սևեռված Հայաստանի վրա: Հայ իշխաններն օգտվեցին բարենպաստ պայմաններից բուժելու իրենց վերքերը, կազդուրվելու Բուղայի հասցրած հարվածներից: Կարճ միջոցում Հայ երկիրը նորից թևավորվեց քաղաքականապես: Արաբների ձախորդությունները օգտագործեց մանավանդ Աշոտ Բագրատունին: Նրանց յոթնամյա պատերազմը (856-863) Բյուզանդիայի հետ բերեց

[1]Theoph. Cont., 167.

[2] Gen., 91.

Աշոտին իշխանաց իշխանի պատվավոր դիրքն ու կոչումը 862 թվին, իսկ հաջորդող գահակալական գծտությունները հարդարեցին ուղին դեպի արքայական թագը 885 թվին:

Քաղաքական մեծ հաղթանակ էր, որ տարավ Աշոտ Բագրատունին, գործելով իր տոհմին հատուկ խոհականությամբ: Մեծամեծ դժվարություններ կային, որ բխում էին երկրի ներքին և արտաքին կացությունից, ծանր պայմաններ, որ սեփական են ֆեոդալական միջավայրերին, լի մրցող և հակամարտ սլաքներով: Հարթել բոլոր այլազան բախումները, քայլելով անվրեպ դեպի որոշ նպատակ, մի գործ էր, որ պահանջում էր առանձին կարողություն և վարպետություն: Բագրատունի իշխանը եղավ այդ վարպետը:

Բուղայի դարձի կարավանը մեծ էր և հարուստ կալանավոր խոշոր դեմքերով, բայց և այնպես երկիրը դեռ չէր զսպված, հակառակ նրա բռնության և խստասիրտ նենգության: Թափած արյան և ավերակների մեջ հևում էր տակավին ապստամբության ոգին: Վասպուրականի իշխանները, նրանք, որ հավատ չընծայեցին Բուղայի երդումներին, ազատ էին մնացել, կառչած իրենց ամրությանց, հենց որ լսեցին Բուղայի անհաջողությունը Ծանարքի դեմ, նորից սիրտ առան, չորս հազարանոց բանակ կազմեցին և Աբուջափր Արծրունու առաջնորդությամբ ասպատակեցին Նվաշ և Թոռնավան գավառները: Նրանց վրա եկավ Նախճավանի արաբ ամիրան, ոմն Աբրահամ: Ընդհարումը տեղի ունեցավ Խոզաղբերք գյուղի մոտ և չնայելով, որ արաբ զնդին օգնության հասավ Բերկրի արաբ ազգաբնակչությունը, հայերն հաղթեցին: Արաբներն արդեն նահանջում էին, երբ Աբուջափրի քեռորդի Սահակ Աբումկդեմ իշխանը, որ կռվի ղեկավարն էր, ձիուց ընկնելով, տեղն ու տեղը սպանվեց թշնամու սրից: Նրա մահվամբ հայ զորքերը ցրվեցին:

Երկրորդ անգամ Աբուջափր կազմեց նոր գունդ Վասակ Կովակեր իշխանի հրամանատարության տակ:

Սմբատ Բագրատունին կողմնակից չէր ապստամբական ցույցերի: Թովմա Արծրունու ասելով, Սմբատն էր, որ դրդեց արաբ Աբրահամին ելնել Աբուջափրի դեմ: Նույն պատմագիրը հավատացնում է, որ դարձյալ Սմբատն էր, որ ուղարկեց Գուրգեն Արծրունուն Վասակ Կովակերի դեմ:

Վասպուրականի նշանավոր իշխաններից էր Գուրգեն, Արծրունի տոհմից, որդի Աբուբելջի: Բուղայի բռնության ժամանակ, չուզենալով «կալ հակառակ չարի», քաշվել էր Բագրևանդ իր քեռի Քուրդիկ Մամիկոնյանի մոտ: Այնտեղից անցնում է Սպեր, ուզում է կայսեր ծառայության մեջ մտնել, բայց հետո միտքը փոխում է և գալիս է Սմբատ սպարապետի մոտ:

Ահա այս իշխանն է, որի միջոցով Սմբատ ձգտում է խեղդել Վասպուրականի շարժումը: Գուրգեն եկավ ամրացավ Ջլմար և Սրինգ բերդերում, ձերբակալեց Վասակ Կովակերին և գրավեց Վասպուրականի տերությունը:

Սակայն, Գուրգեն չարդարացրեց Սմբատի բոլոր հույսերը: Նա ևս արաբների դեմ ելավ, հարձակվեց նախապես այն արաբ ազգաբնակչության վրա, որ Բուղայի հետ եկել և հաստատվել էր երկրում, սրի անցրեց, իսպառ ջնջելով «զամենայն ազգս տաճկաց, որ բնակեալ էին ի Վասպուրական տէրութեան» :

Բուղայի հրամանով Գուրգենի դեմ եկավ ոմն Բուտել զորավար, որ միանալով ութմանիկ արաբների հետ, այլև թիկն ունենալով մի քանի հայ ազատներ՝ թշնամի Գուրգենի, հարձակվեց վերջինիս վրա Որդոք գյուղի մոտ, Հայոց Ձորի արևմտյան սահմանագլխում: Գուրգեն 400 մարդով ջարդեց արաբ երկու հազարանոց գունդը և քշեց իր սահմաններից: Բուղան ստիպված էր ճանաչել պաշտոնապես Գուրգենի իշխանությունը: Մինչև անգամ բերել տվեց նրա համար խալիֆայի կողմից «սուսեր իշխանական, գոտի արիական, քուրք խիզախողք եւ երիվար բարձրավիզ»:

Ինչպես որ Սմբատի կալանավորումից հետո նրա իշխանությունը անցավ Աշոտին, այնպես էլ Աշոտ Արծրունու գերությամբ Վասպուրականի իշխանության տեր դարձավ Գուրգեն Աբուբելջը:

Գերեվարության վեցերորդ տարին, Հայոց 306 թիվը լրացած, յոթերորդ տարու, ուրեմն 307 թվի, սկիզբը, դարձան կալանավորված իշխանները: Հայոց 307 թիվը սկսվում է 26 ապրիլ 858 տարին: Այս հաշվով գերիների դարձը ընկնում է 858 թվի ամառը: Ըստ Թովմա Արծրունու այս ժամանակն էր, որ եկավ գերությունից Գրիգոր իշխանը, որ կոչվում էր Դերենիկ, Աշոտ Արծրունու որդին, եկավ արքունի հրամանով տիրելու աշխարհին իր հոր փոխարեն: Գրիգոր հազիվ 12 տարեկան էր, երբ հաջորդեց հորը: Նախորդ 857 տարին դարձել էր Ափխազաց աշխարհից Աշոտ Արծրունու եղբայր Գրիգորը: Իսկ 859 թվին գերությունից ազատ արձակվեց Աշոտի մյուս եղբայրը՝ Գուրգենը: Ինքն Աշոտը մնաց գերության մեջ երկար տարիներ, և վերադարձավ միմիայն 868 թվին:

Սոքա բոլորը թեկնածու էին Վասպուրականի իշխանության և ընդհարումը Գուրգեն Աբուբելջի հետ անխուսափելի էր: Գրիգոր և Գուրգեն եղբայրները շուտով մեռան, առաջինը 858 թվին, երկրորդը 860 թվին, այսինքն՝ իրենց գալուց մի տարի հետո: Վեճը այսպիսով սահմանափակվում էր Դերենիկի և Գուրգեն Աբուբելջի միջև: Վերջինս պատրաստ էր իշխանությունը զիջանել Դերենիկին և հեռանալ Բյուզանդիա մտնելու կայսեր ծառայության մեջ և արդեն ուղի էր ընկել, երբ ձերբակալվեց Աշոտ Բագրատունու դրդմամբ և հանձնվեց Ատրպատականի արաբ կուսակալին, որ և բանտարկեց նրան:

Այնուհետև Գուրգենի կյանքը նմանում է արկածավոր վեպի, ուր նա ներկայանում է որպես ժողովրդական հերոս և այդ ոգով գրի է առել նրա կյան-

քը, հավանորեն, Շապուհ Բագրատունին, որից քաղում է Թովմա Արծրունին:

Գուրգենն փախչում է բանտից և գալիս Վասպուրական: Դերենիկ զինվում է նրա դեմ և նորից կալանավորում և ձգում Հաղամակերտի բանտը: Այստեղից ևս փախչում է, գիշերում մի վանքում, բայց վանահայրը նենգորեն մատնում է նրան Դերենիկին: Զաքարիա կաթողիկոսի և Աշոտ Բագրատունու միջնորդությամբ հաշտություն է կնքվում Դերենիկի և Գուրգենի միջև: Գուրգենն բաժին է ստանում Մարդաստան գավառը, որպես «բուն բաժին Գուրգենայ»:

Թվում է, թե Գուրգենն Արծրունյաց տան Մարդպետական ճյուղի շառավիղն է: Սրա հայրը Աբուբելջը սպանված է եղել Դերենիկի պապի ձեռքով: Ի՞նչ է եղել գժտության պատճառը, հայտնի չէ: Գուրգենն հիշում է ընտանեկան թշնամությունը, բայց ոխակալ չէ ուզում լինել: Նա ավելի կասկած ունի Աշոտից, թե «զուցէ իբրեւ զապստամբէ ումեմնէ զեկուցանիցէ զնմանէ առաջնորդին Տաճկաց», ուստի և չմնաց Մարդաստանում, այլ գերադասեց ապրել շրջիկ կյանքով, «շրջաբերական յեղափոխմամբ»:

Գուրգենի կասկածն անհիմն չէր: Աշոտ Բագրատունին աշխատում էր գրավել արաբ կառավարության վստահությունը իր քաղաքական ծրագրների համար: Հավատարմության հաստատուն ապացույց էր արաբների աչքում թշնամական վերաբերումը դեպի կայսրը և նրան համակիր անձերը: Գուրգենն Աբուբելջը հարաբերության մեջ էր Միքայել կայսրի հետ և ցանկություն ուներ անցնելու սահմանը: Կայսրը շրջապատված էր Մամիկոնյան իշխաններով, իր մայրն իսկ Մամիկոնյան իշխանուհի էր: Գուրգենի երակների մեջ ևս Մամիկոնյան արյուն կար: Նրա մայրը Բագրևանդի Քուրդիկ իշխանի քույրն էր: Քուրդիկն արդեն անցել էր Բյուզանդիա և մեծ հռչակ հանել: Գուրգենն ուզում էր նրա օրինակին հետևել:

Աշոտ Բագրատունին արգելք հանդիսացավ, ինչպես որ անհաջող անցավ և նրա առաջին փորձը Աշոտի հոր Սմբատի օրով: Բագրատունի իշխանը հասկանում էր, որ բյուզանդական բանակում ընդդեմ արաբների գործող հայ ուժերը մեծապես վարկաբեկում էին և դժվարացնում այն հայ գործիչների դրությունը, որոնք երկրի ներսը մաքառում էին իրենց վիճակը բարվոքելու համար: Աշոտ քաղաքական հակառակորդ էր այսօրինակ փախստականների: Նա խափանեց Գուրգենի փախուստը, խափանեց նաև մի ուրիշ իշխանի նման քայլը շատ արատավոր պայմաններում: Դա Գրիգոր Մամիկոնյանն էր, հիշյալ Քուրդիկ իշխանի որդին: Գրիգորը գերված իշխանների մեջ էր և մինչ բոլորը ազատություն ստացան հավատուրացության սև գնով, Գրիգորը մնաց անդրդվելի իր կրոնի մեջ և բանտից փախավ եկավ Բագրևանդ իր կալվածը:

Արժե բերել պատմագրի եղերական տողերը. «Եւ Գրիգոր Մամիկոնեան արիաբար պահեալ զհաւատն, ելանէ ի բանտէն և գայ մտանէ ի գաւառն իւր Բագրեւանդ, և կամէր ամրանալ ի գաւառն Գաբեղինից ի Գազանածական, որ եւ զկնի յոթն ավուրց մեռանի: Եւ իմացեալ ոստիկանին Մահմետի, որ ի Հայս, առաքէ առ Աշոտ որդի Սմբատայ, զի ուր եւ իցէ ըմբռնեալ առ նա տարցի: Եւ նորա հատեալ զգլուխ մեռելոյն, առաքէ առ նա ասելով թէ կամեցաւ անցանել առ Յոյնս եւ իմ զկնի առաքեալ սպանի եւ ահա գլուխ նորա: Եւ խնդաց Մահմետ և զգացուցանէ Ջափրի և նորին հրամանաւ պատուէ զԱշոտ, տալով նմա զգաւառն Բագրեւանդ եւ արծաթ բիւրս հինգ: Եւ յայնմհետէ բարձաւ ի Հայոց յաշխարհէս ազգն Մամիկոնէից»[1]:

Մահմետը Մուհամմեդ իբն Խալիդ Շայբանին է, որ ոստիկան եկավ Բուղայից հետո և նույն պաշտոնին էր դեռ, երբ բանտից փախած՝ եկավ Գրիգորը: Մահմետը պատվեր ուներ բռնել փախստականին և այդ ծանր գործը հանձնվում է Աշոտին, որ և կատարում է այնպես, ինչպես ինքն է հաղորդում իր իշխանավորին:

Այս տեղեկությունը Վարդան պատմագիրը պարտական է Շապուհ Բագրատունուն: Սա իր ազգակցին՝ Աշոտին (Աշոտի հետ Շապուհ երկու եղբոր թոռներ էին) արդարացնելու համար տալիս է Գրիգոր Մամիկոնյանի սպանության տարօրինակ բնույթ, կամ կրկնում է ժողովրդական մի զրույց, հորինված նույն նպատակով: Աշոտը խառն էր անբախտ իշխանի սպանության մեջ: Քաղաքագետը գուցե և արդարացնե այս ոճիրը, բայց այնպես երբեք չպիտի ներվի մեծ իշխանին այս եղբայրասպան սուրը և ոչ այն անարգ արծաթը:

Ավելի պերճախոս վկայական չէր կարող լինել Աշոտի հավատարմության, քան այս արյունոտ գլուխը: Հայոց 311 թվին նստավ զահ Ամիր ալմումին Ահմատ, ասում է Ասողիկ, և «տայ զերկիրս Հայոց Ալեայ՝ որդւոյ Յահէի. սա կացուցանէ իշխանաց իշխան զԱշոտ»:

Ահմատ՝ Մուստային խալիֆի անունն է, որ գահ բարձրացավ հիջրի 248 թ. ռամազան ամսին, որ է 862 թ. հոկտեմբեր 18-ից նոյեմբեր 17-ը: Հայոց 311 թվականը համապատասխանում է 862 թ. ապրիլի 25 մինչև 863 թ. ապրիլի 24: Ալի որդի Յահեի մեզ ծանոթ Ալի իբն Յահյա ոստիկանն է, որի գալուստը հետևապես ընկնում է 862 թ. հոկտեմբերի 18 մինչև 863 թ. ապրիլի 24 ժամանակամիջոցը: Հավանական է, որ եկած լինի Մուստայինի գահակալությունից անմիջապես հետո, 862 տարին դեռ չբոլորած: Սույն այս 862 թվին պետք է նշանակված լինի Աշոտ Բագրատունին իշխանաց իշխան: «Եւ այսպես ապա զկարգ սպարապետութեան քաղաքավարեալ-

[1] Վարդան, էջ 81:

ասում է Հովհաննես Կաթողիկոսը,- մինչեւ համբաւ բարւոյն ի դուռն արքունի հասանէր»: Ապա Ալի Արմանի ոստիկանը գալիս է և Աշոտին նշանակում է իշխանաց իշխան ամիրապետի հրամանով «բազում զգեստիւք եւ արքունական պատուով ճոխացուցեալ, ի նա հաւատալով զսակս Հայոց եւ զամենայն բեկար արքունի»:

Այսպիսով Աշոտը եղավ «պատուականագոյն եւ առաջին քան զամենայն նախարարութիւնս Հայոց», և բոլորը դաշինք էին կնքում նրա հետ որպես «արդարեւ ընդ թագավորական զարմի»[1]:

Թովմա Արծրունին հաղորդում է, որ երբ Աշոտ ստանձնեց Հայոց աշխարհի վերակացությունը որպես իշխան իշխանաց, հետամուտ եղավ նվաճելու «զիշխանսն Հայոց, զՎրաց եւ զԱղուանից, որ եղեւ իսկ»:

Այստեղից երևում է, որ Աշոտին հանձնած Հայաստանը հասկանալու է ավելի ընդարձակ, արաբական, իմաստով, այսինքն՝ նրա մեջ մտնում էին նաև Վրաց և Աղվանից երկրամասերը:

Երկրի ներսը իր դրությունը ամրապնդելու համար, Աշոտ հաշվի պիտի առներ մանավանդ Վասպուրականի և Սյունյաց զորավոր իշխանական տները: Թովմա Արծրունին պատմում է, որ իշխանաց իշխանը գնաց Դերենիկի վրա և կալանավորեց նրան, որպես անհնազանդի: Լսելով այս լուրը, Գուրգեն Աբուբելջ, որ Վասպուրականից հեռացած ասպանդական կյանք էր վարում, իսկույն վրա հասավ Տարոնի կողմերից պաշտպանելու Դերենիկին ընդդեմ Աշոտի: Սա ստիպված էր ազատ թողնել Դերենիկին և հաշտություն կնքել: Հաշտությունը սրբագործվեց ընտանեկան մերձեցումով: Իշխանաց իշխանը իր դուստրը Սոփին տվավ կնության Դերենիկին, որը թեև հազիվ 15, թե 17 տարեկան էր, բայց արդեն այրի էր: Փեսան գնաց Աշոտի հետ Բագարան և այնտեղ կատարվեց հարսանեկան հանդեսը 311 թվին Հայոց, որ է 862-863 թիվը:

Քանի որ հարսանիքի ժամանակ Աշոտ հիշվում է Թովմայի մոտ որպես իշխանաց իշխան, ուրեմն և այս պարագան վկայում է, որ Աշոտ իրոք, իշխանաց իշխան նշանակված պիտի լիներ 862 թվի վերջերին:

Արծրունիների մեջ ազդեցիկ էր այդ ատեններ Վահան իշխանը, Վասակ Կովակերի եղբայրը: Վահանին իրեն քաշելու նպատակով Աշոտ իր մյուս դուստրը ամուսնացրեց նրա հետ:

Միևնույն ժամանակ Գուրգեն Աբուբելջ վերջնականապես հաստատվեց Անձևացյաց աշխարհում: Մուշեղ Անձևացու մահվամբ, նրա այրին՝ Հեղինեն, առաջարկեց Գուրգենին իր ձեռը և Անձևացյաց իշխանությունը: Այսպիսով Վասպուրականի տեղական վեճերն ու խռովությունները առայժմ դադարեցին:

[1] **Հովհաննես Կաթողիկոս,** էջ 74:

Աշոտը բարեկամական հարաբերություններ հաստատեց նաև Սյունիքի հետ: Գրիգոր Սուփանին հաջորդել էր իր որդին Վասակ Գաբուռը Գեղարքունիքում: Վայոց Ձորի իշխանն էր Վասակ Իշխանիկ վերականչվածը: Գաբուռին Աշոտ փեսայացրեց իրեն, տալով նրան իր Մարիամ դուստրը, և պաշտոնապես ճանաչել տվավ նրա իշխանությունը խալիֆի կողմից: Գաբուռ շուտով մեռավ, թողնելով մի ժառանգ, որ կրում էր իր պապի անունը, Գրիգոր Սուփան:

Վասակ Իշխանիկը ևս մեծ պատկառանք ուներ դեպի Աշոտը և ինչպես ասում է պատմագիրը, «խրատու նորա զունկն մատուցանէր խնամով իբրեւ զօրէնս ի սրտի իւրում պահելով»:

Աշոտի աչքը նմանապես Տարոնի վրա էր, ուր գերված Բագարատի փոխարեն իշխում էին իր երկու որդիք Աշոտ և Դավիթ: Դավթի որդին, Աշոտ, ամուսնացավ հետո Շապուհի դստեր հետ, որ Աշոտի որդին էր[1]:

Այսպիսով բարեկամական և խնամիական ցանցով կապված էր Աշոտ իր շրջապատի հետ: Ըմբոստ իշխաններին սաստելու հմտությամբ Աշոտ հեղինակություն էր: Հարկերի կանոնավոր վճարումով ապահովել էր իր դիրքը նաև բարձրագույն իշխանության առաջ: Ներքին վեճերը և գժտությունները վերացան: Երկիրը խաղաղեց հուզումներից և սկսեց ազատ շնչել: Տասն տարին 862 թվից մինչև 871 թիվը, անդորրության շրջան էր:

Իշխանաց իշխանի վարչական ծիրքերը, արդյունավետ հանգումները, երաշխիք էին լավագույն օրերի: Շատերն արդեն զգում էին մոտիկ ապագան: Ոչ միայն «ամենեքեան դաշինս ընդ նմա դնէին», այլ խորհում էին, որ «եթէ դէպ ինչ պիտոյից գտցէ», այսինքն՝ եթե առիթը ներկայանա, առաջարկեն նրան արքայական գահ:

Առիթը մոտալուտ էր: Թագակիրները դյուրությամբ չեն զիջանում թագը ուրիշներին: Հարկավոր էր մի վերջին փորձություն նախքան թագ կապելը:

Իշխանաց իշխանական տասնամյա շրջանի վերջերին քաղաքական հորիզոնը սկսեց պղտորվել: Բյուզանդական զորքերը նորից Եփրատի ափերին էին: Պատերազմը սկսվեց 871 թվին և շարունակվեց մինչև 874 թիվը: Կայսրը, հայազն Վասիլը, ինքն էր ղեկավարում շարժումները: Մի տարի ընդհատվեց կռիվը և վերստին արծարծվեց 876 և 877 թվերին:

Ամիրապետական գահի շուրջը տարիներից ի վեր սաստկացող խռովարար մրցությունը վերջացավ Մուտամիդի գահակալությամբ (870-892): Կայսեր պատերազմը, ճիշտ է, պավլիկյան իշխանության և Մելիտինեի արաբ ամիրայի հետ էր, բայց գաղտնի չէր, որ սրանց ետևը կանգնած էր

[1] **Հովհաննես Կաթողիկոս**, էջ 96:

արաբ պետությունը: Սահմանագլխի ընդհարումները կարող էին հուզումներ խմորել հայ իշխանական միջավայրում, ուր կրքերը հազիվ զսպված՝ պատրաստ էին հրդեհվել ամեն պատեհ առթիվ:

Մուտամիդ խալիֆը, այս վտանգավոր հնարավորությունը նկատի ունենալով, պատերազմի սկզբից ևեթ Հայաստան ղրկեց Հիսե որդի Շեյխի: Սա քաջածանոթ Շայբանի ցեղիցն էր:

Ամեն անգամ, երբ Հայաստանում քաղաքական կացությունը երկյուղ էր ազդում, ամիրապետները դիմում էին Շայբանի իշխանական տան աջակցության: Տիրելով Ամիդի շրջանին, սրանք սահմանակից էին հայերին և հարմարագույն գործիք խալիֆի ձեռքում ընկճելու ըմբոստությունը:

Ի՞նչ էր Հիսեի պաշտոնը, մոտեն հայտնի չէ: Թովմա Արծրունին ասում է, որ Հիսե «զզօրապետութիւնն Հայոց ունէր»[1]: Արաբները պահակ զորքեր ունեին կարևոր դիրքերում: Հավանական է, որ Հիսե նրանց հրամանատար էր նշանակված: Նա եկավ ճիշտ պատերազմի տարին 871 թվի գարնան[2]:

Հիսե Հայաստան մտավ թե չէ, կռվի բռնվեց Աշոտ Արծրունու հետ: Աշոտը նոր էր վերադարձել գերությունից: Կալանավորված 852 թվին, արձակվեց միայն 868 թվին, գերության մեջ մնալով 17 տարի: Թովմայի բնագրի մեջ գրչագրական սխալներ են սպրդված և խանգարած ժամանակագրությունը: Ստույգ ընթերցումը վերականգնելու համար ինքը Թովման հաստատուն ելակետ է ընձայում: Նա պատմում է, որ Աշոտն ընկերացավ Բուղայի որդի Մուսեին, երբ սա գնում էր Կզվին քաղաքացիների դեմ, որ ապստամբել էին տաճիկներից: Մուսեն խոստացել էր Աշոտին արշավանքից հետո միջնորդել և նրան ազատ արձակել իր հայրենիքը: Մուսեն հաջողությամբ վերջացրեց կռիվը, բայց զլացավ կատարել իր խոստումը: Աշոտը փախավ և եկավ հայրենիք: Ապստամբ Կզվինը Ատրպատականի Կազվին քաղաքն է, ուր ըմբոստացել էր Աբումուլիբ իշխանը և սրան սանձելու ուղարկվեց արդարև Մուսե:

Կռիվը տակավին շարունակվում էր, երբ գահակալական խռովությունները ստիպեցին Մուսեին հետ դառնալ Բաղդադ: Խալիֆ Մուհտադի սպանվեց 870 թվին հունիս ամսին[3]: Մուսեի դարձը այդ թվից առաջ է:

---

[1] **Թովմա Արծրունի**, էջ 542:

[2] Կաղանկատվացին խոսում է Հիսեի մասին 318 թվի շարժը հիշելուց անմիջապես հետո, 318 Հայոց թվականության = 869 թ. ապրիլից - 870 թ. ապրիլ: Արաբական տեղեկությամբ նա նշանակվեց հիջրի 256 թվի վերջը, 870 թ. նոյեմբեր, **Tabari III,** 3 էջ 1841: Ըստ **Յակուբի**, 621, Հիսե եկավ 257 ջումմատ ք. ամսում, որ է 871թ. ապրիլ: Երևի, նշանակումը տեղի է ունեցել 870 նոյեմբերին, իսկ գալը՝ 871 թ. ապրիլին:

[3] **Masudi,** Prairies d'Or, VII, 12.

Բուղան ինքը սպանվեց 868 թվին: Այս ժամանակներն է տեղի ունեցել Աշոտի դարձը[1]:

Աշոտ Արծրունի տուն դառնալով, սկսավ խեթ աչքով նայել այն հանգամանքի վրա, որ Գուրգեն Աբուբելչը հաստատվել էր հարևան Անձևացյաց աշխարհում: Աշոտը պահանջում էր, որ Գուրգենը իր երկրի մի մասը զիջանի Դերենիկին: Գործը արյունահեղության պիտի հասներ, եթե իշխանաց իշխանը իր որդի Սահակի միջոցով չմիջամտեր վեճին և հաշտությամբ վերջ չդներ եղբայրասպան կռվին:

Աշոտ Արծրունու հետևյալ ընդհարումն եղավ արաբ ուքմանիկ ցեղի հետ: Այս անհանգիստ տարրը սպանել էր Ռուստոմ Վարաժնունի իշխանին և գրավել Ամյուկ բերդը: Տիրացել էր նաև Վարագ վանքին, բանտարկելով վանահոր: Արծրունյաց իշխանը պատրաստվում էր զենքի ուժով պատժել ուքմանիկ գերփիչներին, երբ սրանց օգնության հասավ Հիսե՝ տասն և հինգ հազար հեծելազորի գլուխ անցած: Այս անգամ միջնորդ հանդիսացավ իշխանաց իշխանի փեսան, Վահան Արծրունին իր որդի Գագիկ Աբումըրվանի հետ և ստիպեց զենքը վայր դնել: Հիսե թվում է մտադիր է եղել խուժելու Վասպուրական, ինչպես կարելի է եզրակացնել պատմագրի այն նկատողությունից, թե Աշոտ և Դերենիկ հանձնառու եղան Հիսի առաջ արքունի հարկերը վճարել և «դարձուցին ընդ նոյն ճանապարհ ընդ որ եկեալ էր, ոչ թողացուցին նմա ելանել ընդ աշխարհն Վասպուրական»: Հիսե թողեց գնաց Պարտավ և «այլ ոչ եւս այնուհետեւ համարձակ յանձն առնոյր մտանել ընդ աշխարհս Վասպուրական»[2]:

Հիսե երկար չմնաց Աղվանից մայրաքաղաքում: Երևի ձմերելուց հետո, հաջորդ 872 թվին, հեռացավ, թողնելով այնտեղ քաղաքապետ մի ոմն Յամանիկ իրեն հավատարիմ մի անձն: Սակայն Յամանիկ չարդարացրեց նրա վստահությունը և Արծրունի իշխանների նման սա ևս ծառացավ իր տիրոջ դեմ, ձգտելով անկախության: Հիսեն հարկադրված էր զենքի դիմել անհնազանդ Յամանիկին սաստելու համար: Հայ իշխանների օգնությամբ պաշարեց Պարտավը, պատերազմեց Յամանիկի դեմ գրեթե մի ամբողջ

---

[1] **Թովմա Արծրունի**, էջ 236, տալիս է դարձի ստույգ թվականը. «ի ՅԷ ամի Հայոց թուականութեանս եկն Աշոտ Վասպուրական իշխան ի գերութենէն»: Անտարակույս, ՅԷ = 307, ուղղելու է ՅԺԷ 317, որ է 868-369 թիվը: Արդարև, նույն պատմագիրը, էջ 244, վկայում է, որ Աշոտը ապրեց հետ գերեդարձի 6 տարի և մեռավ ՅԻԳ թվականության Հայոց հինգշաբթի օր 6 հոռի, որ է 874 թիվը մայիսի 27: Հետևապես դարձել էր 868 թվին: Թովմայի խոսքերը, էջ 243, «**Ն** ամ ի գերութեան արարեալ եւ **Զ** ամ կեցեալ յետ գերեդարձն լինելոյ» հայտնի հայագետ **Dulaurier**, Recherches de la Chronologie, p. 265, սրբագրում է «**Է** ամ ի գերութեան եւ **ԺԶ** ամ յետ գերեդարձն լինելոյ»: Մինչդեռ ուղղելու է միայն գերության **Ն** տարին **ԺԸ** (կամ **ԺԷ**): Աշոտ կալանավորվեց 852 թ. և ազատվեց 868 թ., հետևապես մնաց գերության մեջ 853-867 թթ., այսինքն՝ 15 տարի:

[2] **Թովմա Արծրունի,** էջ 243:

տարի և առանց հաջողելու հեռացավ Աստրիք: Նորեն եկավ, կռվեց և դարձյալ ձախողեց:

Մովսես Կաղանկատվացին պահել է մեզ Յամանիկի անունը՝ որ էր «Մահմուտ որդի Ապղմեհի և կոչիւր Եմեմիկ (կարդա՛ Եմենիկ)»: Այս Եմենցի Մահմետի դեմ եկավ Աստրեստանից Եսայի որդի Շեխա, այսինքն՝ Հիսե, արաբերեն Իսա իբն Շեյխ, կամակից ունենալով իշխանաց իշխան Աշոտին: Աստրիք կամ Աստրեստան ասելով հասկանալու է այս դեպքում Ամիդի շրջանը, Շայբանի ցեղի տունը:

Պարտավի վրա գնացին Հիսե և Աշոտ և «քաջամուխ կան ի մարտի զամս 13»[1]: Նույն օրերում վախճանվեց Աղվանից հայրապետը: Սամուել եպիսկոպոսը Աշոտի հավանությամբ ընտրվեց հաջորդ 326 թ. Հայոց, այսինքն՝ 877-878 թվին:

Ասել է, թե Յամանիկի և Հիսեի կռիվը պատահել է այս ժամանակ և թերևս երկրորդ կռիվն է: Ուշադրության արժանի է պատմագրի նկատողությունը, որ մարտը տևեց 13 տարի: Եթե ներելի է կարդալ **զամիսս** 13 փոխանակ **զամս,** 13 ամիսը կհամապատասխանե Թովմայի մի տարվան, «տուեալ պատերազմ ընդ քաղաքին զտարի մի»[2]: Իսկ եթե այնպես հասկացվի, որ Յամանիկ մնացել է սանձարձակ ըմբոստ 13 տարի շարունակ, պետք է ենթադրել, որ ընդվզումը սկսվել է Հիսեի հեռանալուց հետո 872 թվին և տևել է մինչև Աշոտի թագավորելու նախօրյակը, ուրեմն իրոք 13 տարի:

Պարտավի ապստամբ իշխանի փառասիրական ձգտումներն ավելի հեռուն էին գնում: Նա ուզում էր ձեռք դնել ամբողջ Հայաստանի վրա: Հիսեն հեռացավ 878 թվին: Հաջորդ տարին նա Միջագետքում կռվում էր Կունդաջիկ իշխանի դեմ հիջրի 266 = 879-880 թվին:

Յամանիկ երազում էր նրա տեղը բռնել և «թուղթս եւ դեսպանս մի զմիոյ կնի առնելով առ իշխանս աշխարհիս», առաջարկում էր իր թեկնածությունը «ի վերակացութիւն Հայոց»: Հայերը սակայն գերադասեցին իրենց մեջ տեսնել Ահմատ որդի Հալթի, որ է արդեն ծանոթ Մուհամետ իբն Խալիդ, այն անձը, որ Բուղայից հետո կուսակալ եկավ և մեղմ քաղաքականությամբ վերականգնեց խաղաղությունը խռովված երկրում: Իշխանների ցանկությունը հարգվեց և Մուհամետ նշանակվեց Հայաստան:

Արաբական իշխանությունը իր զորության վայրէջքին հասած՝ ստիպված էր հարմարվել երկրի տրամադրության, երբ կուսակալ էր նշանակում: Տրամադրության հայտարարը Աշոտ իշխանաց իշխանն էր: Ակնածելի ուժ ոչ միայն տեղացի արաբ իշխանավորների աչքում, այլև խալիֆի ներկայացուցիչ կուսակալի: Իրերի ընթացքը ցույց էր տալիս, որ կամ պետք էր զիջանել ասպարեզը նրան, կամ փորձել տապալելու և մեջտեղեն հանելու վտանգավոր իշխանին: Բախումը անխուսափելի էր:

[1] **Մովսես Կաղանկատվացի**, Գ, գլ. 21.

[2] **Թովմա Արծրունի**, էջ 245:

Նոր կուսակալը ոտ կոխեց Հայաստան: Ընդառաջ ելան մինչև Դատվան ազդեցիկ իշխանավորները, Դերենիկ Արծրունին իր իշխաններով, Տարոնի Աշոտ Կյուրապաղատը, Մոկաց իշխան Մուշեղը, Ապահունյաց բռնավոր Աբլբառ Կայսիկը: Միայն իշխանաց իշխանը չշարժվեց տեղից, այլ իր կողմից ուղարկեց Շապուհ եղբորը: Այսպիսի շքախումբով Մուհամմետ իբն Խալիդը ուղղվեց դեպի Դվին:

Խալիդի որդին չարդարացրեց այն մեծ վստահությունը, որ ցույց էր տվել դեպի նրա անձը Հայ երկիրը և ամենից առաջ իշխանաց իշխան Աշոտը: Արդյոք բարձրից հանձնարարությո՞ւն ուներ, դժվար է ասել, բայց փաստ է, որ ընտրված կուսակալը Աբլբառ Կայսիկի հետ միասին ծրագրում են նենգությամբ բռնել հայ իշխաններին և զինաթափ անել երկիրը: Այս նպատակով գաղտնի հարաբերության մեջ են մտնում Պարտավի ըմբոստացած Յամանիկ բռնավորի հետ և խորհուրդ տալիս, որ նա` թշնամի ձևանալով դուրս գա որպես թե կռվելու նորեկ կուսակալի դեմ, բայց իրոք միանալու նրա և Աբլբառի ուժերին ընդդեմ իշխանաց իշխան Աշոտի և մյուս հայ իշխանների:

Ահա այս ճգնաժամին է, որ Աշոտը փայլեց իր խորիմաց կարողությամբ և հեռատեսությամբ: Պատմագիրը իրավամբ կոչում է նրան «առաւելեալն իմաստութեամբ»: Տարիների փորձառությունը գանձարան էր բարի խորհուրդների, որ շշնջում էին, թե արաբական միջավայրում պետք է միշտ արթուն մնալ, որովհետև գողը կարող էր գալ ամեն ժամու: Աշոտ անհոգ չէր նստած: Մուհամմետի գալու օրից նա բռնել էր վաղօրոք բոլոր կարևոր դիրքերը, «կամուրջների խելերը եւ ձորերի կիրճերը» և հաջողել էր ձեռք ձգել այն նամակը, որ Մուհամմետ և Աբլբառ գրել էին և հատուկ սուրհանդակով ղրկել Յամանակին:

Արաբ դավադիրները սկսել էին արդեն իրենց մութ գործը, ջանալով միևնույն ատեն պառակտել հայ ուժերը: Բանսարկությամբ գժտեցին Դերենիկ Արծրունուն Տարոնի իշխանի` Աշոտ Կյուրապաղատի հետ:

Քսու մարդիկ հավատացրել էին Դերենիկին, որ Աշոտ ձգտում է խլել նրանից իշխանությունը: Ամբաստանության զոհ եղավ Կյուրապաղատը, որ հանկարծակի կալանավորվեց Դերենիկի հրամանով: Ասում են, որ Դերենիկի հավելյալ շարժառիթն էր, Կյուրապաղատի տեղ, Տարոնի իշխանությունը տալ նրա եղբորը Դավիթին, որ կոչվում էր Արքայիկ և որ իր` Դերենիկի քրոջ Մարիամի ամուսինն էր: Արծրունի իշխանն արդարև նոր կուսակալի ձեռքով հաստատեց իր փեսային Տարոնում[1]:

[1] Ըստ Թովմայի (էջ 248) Դավիթ Արքայիկը իշխեց Տարոնում «ամս է»: Սմբատ թագավորի «յերրորդ ամի» Դվինի շարժը եղավ,և «յետ այսր յերկրորդ ամի», հույները պաշարեցին Կարին քաղաքը: «Եւ ի նմին ամի մեռաւ Արքայն իշխան Տարօնոյ» (**Թովմա Արծրունի**, էջ 260): Սմբատի երրորդ տարին է 892, սրանից 2 տարի հետո, կլինի 894 թիվը: Այս թվին մեռած Արքայիկը եթե յոթն տարի է իշխել, նշանակում է սկսել է 894-7 = 887: Անհնարին է, քանի որ

Ահմատ կամ Մուհամետ իբն Խալիդը և Աբլբառ Կայսիկը Դվինում ետևե եղան չար ծրագիրն իրագործելու: Իշխանաց իշխանը, որ «քաջագոյն եւ հանճարեղագոյն էր քան զբնաւ Հայաստանեայս եւ զընդհանուր կացեալս ի ներքոյ երկնից», անգետ ձևանալով դավադրության, եկավ ներկայացավ արաբ ամիրային առատաձեռն պարգևներով: Բարեմիտ և զգույշ իշխանը, երևում է, հույս ուներ մի կերպ վանել սպառնացող փոթորիկը հայ երկնքից: Երբ համոզվեց, որ խաղաղ միջոցները ի դերև պիտի ելնեն, դիմեց զենքի: Նա պատվեր տվավ իր քաջարի եղբոր Աբասին, որ սպարապետն էր, պատրաստ լինել: Առավոտյան մինչ արաբ կուսակալը սպասում էր իշխանների ողջույնին, Աբասը մտավ մենակ կուսակալի մոտ և հանձնեց նրան այն թուղթը, որ ինքը կուսակալը գրել էր Յամանիկին դավադրական նպատակով: Ապա սպարապետը բռնելով նրա ձեռքից, հանեց դուրս, սիրտ տվավ նրան, որ չվախենա և նստեցրեց ջորու վրա ու հրամայեց դառնալ այնտեղ, որտեղից եկել էր: Իշխանաց իշխանի որդին Շապուհ ուղեկցեց արտաքսված կուսակալին մինչև Ասորեստանի սահմանները: Վեհանձն հաղթություն առանց կաթիլ արյունի:

Կուսակալի դաշնակից Աբլբառ Կայսիկ իշխանը ևս արժանի էր պատժի: Աշոտ իշխանաց իշխանը պաշարեց Մանազկերտը, Աբլբառի ոստանը: Այդ ժամանակ եկավ գուժկան, որ Աշոտ Կյուրապաղատ ազատվել է բանտից և ձերբակալել Դերենիկին: Իշխանաց իշխանը թողեց Մանազկերտի պաշարումը և գնաց իր փեսա Դերենիկին օգնության և հանեց նրան բանտից ոչ առանց դժվարության:

Դավադրության երրորդ անդամը Յամանիկը կուսակալի անարգալից արտաքսումից հետո փորձեց միայնակ գլուխ հանել մշակված ծրագիրը: Երկպառակության որոմն ցանեց իշխանների մեջ, գրգռելով Դերենիկին իշխանաց իշխանի դեմ, ինչպես և Աբլբառ Կայսիկին: Մյուս կողմից բամբասրկեց, որպես թե Դերենիկը դավեր է սարքում Աշոտի դեմ: Դերենիկը սպանվեց, երբ գնում էր Ճվաշ գավառը ձմերելու Մառական ավանում: Ճանապարհին Հեր քաղաքի պետը՝ ոմն Աբլբերս, դարան մտնելով հարձակվեց Արծրունի իշխանի վրա, երբ սա անցնում էր Անձախի ձորից, և սրով խողխողեց:

Լուրեր էին պտտվում, որ իշխանաց իշխանի մատը խառն էր այդ սպանության մեջ: Դերենիկի մահվան մի երկրորդ պատմության մեջ, Հերի

---

այս ժամանակ Աշոտ արդեն թագավոր էր, մինչդեռ Արքայիկի Տարոն հաստատվելը Մուհամետ իբն Խալիդի գալստյան տարին էր: Նրա հալածվելուց հետո է, որ Ահմատը, Հիսեի որդին, թագը բերեց: Պարզ է, որ Է ընթեռնելու է ԺԷ, կամ գուցե աւելի ճիշդ ԺԵ: Այս հաշվով Արքայիկի իշխանության սկիզբը կստացվի 894-17/15= 880 և միևնույն ժամանակ կորոշվի Մուհամեդ իբն Խալիդի գալստեան տարին:

քաղաքապետը կոչվում է որդի Ապումսարա, և դավադրության մասնակից է համարվում Գագիկ Արումրվան, որ իշխանաց իշխանի դստեր որդին էր: Կարելի է կարծել, որ Գագիկի մասնակցությունը թելադրանք էր իշխանաց իշխանի կողմից:

Մի ուրիշ տեղեկությամբ, Դերենիկի սպանիչները Իսմայելյան ազգի գլխավորներն էին, որ սեփականել էին Հեր և Զարևանդ գավառներում ինչ ինչ հողեր Դերենիկին պատկանյալ[1]:

Ինչպես վերջացան Աշոտի հաշիվները Յամանիկի հետ, ի մոտո հայտնի չէ, բայց պետք է ենթադրել, որ Աշոտը կարողացավ ընկճել այս խարդախ և խռովասեր բռնավորին: Սանձված էր նաև Մանազկերտի Կայսիկ իշխանը, ինչպես տրամադրում է կարծել Կոստանդին Ծիրանածնի վկայությունը[2]:

Այսպիսով Աշոտի հակառակորդները, երկրի խաղաղությունը վրդովող արտաքին, թե ներքին ուժերը, պարտվեցին: Աշոտ միակ խոշոր անձն էր հրապարակի վրա, առանց ախոյանի, առանց հայ, թե արաբ մրցորդի: Բաբոյական հեղինակությունը և զինվորական ուժը լռության և անգործության էին մատնել խռովարար հույզերն ու ձգտումները: Անպայման Աշոտ երկրի տեր ու տիրական էր: Եթե արաբ և պարսիկ ամիրաների համարձակությունն ու վճռականությունը ունենար, Բագրատունի իշխանը կարող էր խզել իր կապերը ամիրապետի հետ և հայտարարել իրեն ինքնիշխան: Սակայն, Աշոտի ամենամեծ արժանիքը խոհեմությունն ու զգուշությունն էր և չէր սիրում խաղալ անհայտությանց հետ: Ուստի միշտ գերադասելի էր նրա համար պահել և չկորցնել ծանր աշխատությամբ վաստակած վստահությունն ու հավատը ամիրապետի: Առանց աղմկարար ցույցերի, առանց դրժելու խալիֆի հետ ունեցած հարաբերությունը, իշխանաց իշխանը չտատանվեց մի կարևոր և գործնական քայլ անել, ստեղծած դրությունը սրբագործել արքայական ծիրանիով: Ընդհանուր ցանկությունն էր:

Պատմագրի խոսքերի մեջ ճշմարտություն կա, թե հայ իշխաններն ու նախարարները տեսնելով Աշոտի «քաջատոհմիկ պերճութիւնը», խորհուրդ արին և որոշեցին թագավորացնել նրան իրենց վրա: Այս մասին հայտնեցին ամիրապետին և սա ընդունեց «արժանահայց խնդիրը» և ղրկեց Աշոտին արքայական թագ: Խալիֆ Մուտամիդ չէր կարող այլ կերպ վարվել առանց վախենալու նորանոր փորձանքներից: Կայսերական քաղաքականությունը անգործ չէր: Տարոնի Բագրատունի իշխանը արժանացել էր պալատական բարձրագույն տիտղոսի՝ կյուրապաղատության: Բյուզանդական գահի վրա բազմած էր հայազն Վասիլ:

[1] **Հովհաննես Կաթողիկոս,** էջ 79:

[2] De Administrando Imperio, p. 44.

Ոչ ոք չէր կարող երաշխավորել, արդյոք իշխանաց իշխանը, եթե մերժում ստանար ամիրապետից, երեսը չէ՞ր դարձնի արաբներից, և կայսեր հովանավորության հետ միասին չէր ստանա ըղձալի թագը Բյուզանդիայից: Այս դեպքում Հայաստանը պետք է ընկներ ընդմիշտ արաբների ձեռքից և անցներ նրանց ոխերիմ թշնամիներին:

Մուտամիդ զոհացում տվավ երկրի բաղձանքին: Գեորգ կաթողիկոսը հոգևոր օրհնությամբ պսակեց Աշոտին թագավոր Հայոց թ. 334 = 885-886 թվին: Վասիլ կայսրը շտապեց շնորհավորել Աշոտի հաջողությունը, «խաղաղութեան, նուաճութեան եւ սիրոյ» դաշինք հաստատելով և «որդի սիրելի անուանելով» և «հաղորդակից կացուցանելով յամենայն թագաւորութիւնս տէրութեան իւրոյ»: Վերջին խոսքերիս իմաստն է՝ առնել Աշոտին կայսերական հովանավորության տակ:

Քաղաքական ոգորումները պսակվեցին հաղթանակով: Բագրատունի իշխանի համար թագ բերողը ոչ այլ ոք էր, եթե ոչ Շայբանի տան զավակ՝ Ահմատը, որդի Հիսեի (և ոչ Հիսե, ինչպես մեր մատենագիրների մոտ է): Այս ևս մի խոշոր հաջողություն էր: Աղձնիքում բույն դրած և կենտրոնական իշխանության կոթնած արար իշխանական տունը, Բագրատունիների կատաղի հակառակորդը, ստիպված էր հրաժարվել պայքարից: Աշոտի թագավորելովը փակվում է քաղաքական ապրումների մի ամփոփ շրջան, մի ամբողջություն: Զգտումները հանգել էին իրենց նպատակին:

Այստեղ կարող ենք կանգ առնել և հետևել Բագրատունյաց երկրորդական ճյուղերի գործունեության դրացի երկիրներում:

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ՃՇԳՐՏՈՒՄՆԵՐ

Աշոտի թագավորության տարին հայտնի չէ հաստատապես, ուստի և տարաձայնության նյութ: Մատենագրական տեղեկությունները, տարաբախտաբար, աղքատ են: Եղածները բխում են մի աղբյուրից, որ է Թովմա Արծրունի: Աչքի անցնենք բոլոր հայտնի տեղեկությունները նրանց ծագումը և փոխադարձ կապը պարզելու համար:

1. Հովհաննես Կաթողիկոս, ժամանակակից և թերևս ականատես Աշոտի թագադրության, զլացել է ավելի բան հաղորդելու, քան որ Աշոտին պսակեց Գեորգ հայրապետը և որ այս առթիվ Բարսեղ (Վասիլ I) կայսրը հարաբերության մեջ մտավ Աշոտի հետ սիրո և խաղաղության անունով[1]:

2. Թովմա Արծրունի հաղորդում է, որ Աշոտ ապրեց «**Ե** ամ յիշխանական ճոխութեան, **ԻԵ** ամ յիշխանաց իշխանական պետութեանն, **Դ** ամ ի թագակապ շքեղութեանն, եւ մեռաւ **ՅԼԵ** թուականութեանն Հայոց և ի **ԺԵ** ամի հայրապետութեանն Գէորգեայ Հայոց կաթողիկոսի»: Ուրեմն իշխան եղավ

[1] **Հովհաննես Կաթողիկոս,** էջ 78:

հինգ տարի, իշխանաց իշխան՝ քսանհինգ տարի, թագավոր՝ չորս տարի և մեռավ 339 թվին Հայոց, Գեորգ կաթողիկոսի 15-րդ տարին[1]:

3. Ասողիկ հայտնում է, որ Աշոտի թագադրությունը տեղի ունեցավ Հունաց Վասիլ թագավորի օրով և կամքով **յլզ** թվականության Հայոց և ի գալստենէ Փրկչին մերոյ Տեառն Աստուծոյ ամք **պձը**, յաւուրս տեառն Գէորգայ **յժբ** ամի հայրապետութեան նորա»: Այլև որ «նախ քան զթագաւորութիւնն, երեսնամեայ ժամանակօք իշխան եւ իշխանաց իշխան եղեալ Հայոց եւ Վրաց»[2]:

4. Սամուել Անեցի ունի. «**պձէ** (կարդա՛ **պձե**), **յլդ** ի բառնալոյ Արշակունեաց թագաւորացն մինչեւ ցթագաւորութիւնս Բագրատունեաց լինին ամք **նլդ**: Աշոտ իշխանաց իշխան թագաւորեաց Հայոց ամս **ե**»[3]:

5. Կիրակոս կրկնում է Սամուելին. «ի բառնալոյ թագաւորութեան Արշակունեաց մինչեւ ցթագաւորութիւն Բագրատունեաց լինին ամք **նլդ**. որ **յլդ** թուին թագաւորեաց Աշոտ» ավելացնում է «զամս **լ** եւ **բ** իշխանաց իշխան կացեալ եւ **ե** ամ թագաւորեալ»[4]:

6. Վարդան քաղում է Ասողիկից. «Զնոյն (զթագն) և կայսրն Վասիլ առաքէ և օրհնէ զթագն տէր Գէորգ **յլզ** թւին և **յժբ** ամի հայրապետութեան իւրում և **յպձը** ամի ծննդեան տեառն: Որ բարիոք կարգաւորեաց զյօրինուածս թագաւորութեանն ամս **ե**... կատարի ի Քրիստոս **hա** ամաց»[5]:

Այդ այս տեղեկություններից կարևոր է առաջին երկու պատմագիրների՝ Հովհաննես Կաթողիկոսի և Թովմա Արծրունու հաղորդածը: Ասողիկ ավելի բան չգիտե, քան ինչ որ հանել է Թովմայից: Արդարև, ըստ Թովմայի Աշոտ մեռավ 339 թվին, չորս տարի թագավորելուց հետո: Ասել է, թե թագավորել է 336 թվին, ինչպես հաշվել է Ասողիկ: Եթե մահվան տարին, 339 համապատասխանում է Գեորգ կաթողիկոսի 15-րդ տարվան, գահակալության տարին 336 կգա ուղիղ նույն կաթողիկոսի 12-րդ տարին: Ասողիկ ավելցրել է իր կողմից միմիայն Քրիստոսի համապատասխան թվականը, 336= 887-888: Թովմա տալիս է Աշոտին հինգ տարի որպես իշխանի և 25 տարի որպես իշխանաց իշխանի: Ասողիկ գումարել է երկու թվերը հաշվելով 30 տարի իշխանի և իշխանաց իշխանի համար:

Ասողիկ մի նոր բան է հայտնում, որ չկա Թովմայի մոտ. «Աշոտ կեցեալ ամս **լբ**, թագաւորեալ ամս **ե** մահուամբ փոխի առ Քրիստոս»: Աշոտ, որի իշխանությունը հաշվում է 34 տարի, չէր կարող 32 տարի ապրած լինել: Ակներև է, որ 32 թիվը հարազատ չէր: Վարդան այստեղից գիտե, որ Աշոտ

---

1 **Թովմա Արծրունի**, էջ 258:

2 **Ասողիկ**, էջ 157:

3 **Սամուել Անեցի,** էջ 95:

4 **Կիրակոս Գանձակեցի**, Վենետիկ, 1865, էջ 45:

5 **Վարդան**, էջ 86:

71 տարի է ապրել և հինգ տարի թագավորել: Հետևապես 32 ուղղելու է 71: Ասողիկի առաջին հրատարակության մեջ 32-ի փոխարեն կարդացվում է 21, որ հաստատում է 71-ի միավորը ընդդեմ 32-ի միավորի: Ստորև կտեսնենք, որ 71 ևս հարազատ չէ, և պետք է լինի 61: Ամեն պարագային կարևոր տեղեկություն է, անկախ Թովմայից և առնված հավանորեն Շապուհ Բագրատունու կորած գործից: Ասողիկ հարկ է համարել հիշել, որ Աշոտ թագավորեց հինգ տարի, թեև այս հակասում է Թովմայից քաղած տեղեկության, որի համաձայն Աշոտ թագավորել է չորս տարի՝ 336, 337, 338 և 339 տարիները:

Սամուել տալիս է Աշոտին հինգ տարի թագավորություն, անշուշտ Ասողիկի ազդեցության տակ, ուստի և թագավորության սկիզբը դնում է 334 թ. Հայոց = 885, ընդունելով մահվան 339 թվականը, 339 - 5 = 334: Արշակունյաց անկումը համարում է Սամուել 451 թվին[1], որտեղից մինչև Աշոտի գահակալությունը 885 թվին հաշվում է ուղիղ 434 տարի:

Կիրակոսը հետևում է Սամուելին[2], Վարդանը՝ Ասողիկին: Սրանց տեղեկությունները ուրեմն անկախ արժեք չունին, ինչպես չունին և իրենց աղբյուրները, Ասողիկ և Սամուել: Միակ հիմնական աղբյուրը մնում է Հովհաննես Կաթողիկոս և մանավանդ Թովմա Արծրունի:

Տարաբախտաբար Թովմա Արծրունու մոտ մի գրչի վրիպակ կա, որ չէ նկատել Ասողիկ և որ դյուրին է վեր հանել: Արծրունյաց պատմագիրը դնում է Աշոտի մահը 339 թ. Հայոց և Գեորգի 15-րդ տարին: Հետևապես Գեորգի առաջին տարին գալիս է 324 թ. Հայոց, ինչպես հաշվել է Ասողիկ: Գեորգի նախորդ Զաքարիա կաթողիկոսը, նույն Թովմայի վկայությամբ, վարեց հայրապետական աթոռը 15 տարի[3], ուրեմն աթոռակալած պիտի լինի (324-18=) 306 թվին Հայոց: Սակայն այս հակասում է նույն պատմագրի այն վկայության, թե 306 թիվը կշռում է Զաքարիայի երրորդ տարին. «և եղեւ ի լնուլ վեցերորդ ամի գերութեանն Հայոց որ է **յզ** ամ ըստ թուոյ հայերէն տումարին և ունի յոբելեանք **զ** եւ օլոմպիադ**ս** (կարդա՛ օլիմպիադ**ս**) և ընդիքտիոնք<ի>, եւ **գ** ամ հայրապետութեան Հայոց կաթողիկոսի տեառն Զաքարիայի, եւ մուտ եօթներորդ ամի»[4]:

Եթե 306 թ. լրացած և 307 թ. սկսած համապատասխանում է Զաքարիայի 3-րդ տարուն, ուրեմն առաջին տարին կգա 304 լրացած և 305 սկսած տարին: Արդ 304 թ. Հայոց սկսվում է 855 թ. ապրիլ 26, լրանում 856 թ. ապրիլ

---

[1] **Սամուել**, էջ 70:

[2] Կիրակոսի՝ 32 տարին հետևանք է հնգի (ե) յոթ (է) սխալ ընթերցման, որով 30 փոխարեն 32:

[3] **Թովմա Արծրունի**, Գ, գլ. 19, էջ 245:

[4] Նույն, Գ, գլ. 14, էջ 226: Հոբելյան հաշվում է 50 տարի, ուրեմն 6 հոբելյան, 300 տարի: Ինդիկտիոն՝ 15 տարի, բաց է թողած 20=ի, 20×15=300:

26, որտեղից սկսվում է հետևյալ 305 տարին: Կարելի է ասել, որ Զաքարիա գահակալել է 855 թ. վերջը, կամ 856 թ. սկիզբը, և որովհետև աթոռը վարել է 18 տարի, նրա վերջին տարին կհասնե մինչև 321 թվի վերջը և 322 թվի սկիզբները, այսինքն՝ 873 թ. ապրիլ 22-ից հետո:

Զաքարիայի հաջորդ Գեորգ կարող էր գահ բարձրանալ 873 թվի վերջերը կամ 874 թ. սկիզբները: Հետևապես Աշոտի մահվան տարին, 339 Հայոց թ. որ է 890 թ. մինչև 891 թ. ապրիլ, չի համապատասխանի Գեորգի 15-րդ տարուն, այլ 17-րդ: Պետք է ենթադրել, որ Թովմայի **ժե** գրչական սխալ է փոխանակ **ժէ**-ի:

Հովհաննես Կաթողիկոս տալիս է Զաքարիային 22 տարի[1] և ոչ 18 ինչպես Թովմա Արծրունին: Ասողիկ նախընտրել է 22 տարին և չորս հավել տարիները շահելու համար, երկու տարով առաջացրել է Զաքարիայի ընտրությունը և նույնչափ տարով հետաձգել նրա մահը, հաշվելով նրա աթոռակալությունը 302 Հայոց թ. մինչև 321 թ. կամ 853 թ. մինչև 875 թ.:

Հովհաննես Կաթողիկոսի վկայությամբ, Զաքարիայի նախորդ Հովհաննես Ովայեցի կաթողիկոս կենդանի էր տակավին 302 թվին մեհեկան ամսին: Նույն ամսի 25-ին նա սահմանեց տոնել Բուղայի զոհերից Ատոմյան 150 վկաների հիշատակը: Այնուհետև կաթողիկոսն եկավ շրջագայելու Գեղարքունյաց վիճակը և վախճանվեց Մաքենոց վանքում:

Ասողիկ այստեղից հետևցրել է, որ Հովհաննես Կաթողիկոս մեռել է նույն 302 թվին և նույն տարին հաջորդել է Զաքարիա: Սակայն 302 Հայոց թ. մեհեկան 25 կշռում է փրկչական 853 թ. նոյեմբերի 17: Ծերունի կաթողիկոսը չէր կարող ձմռան ցրտերին շրջագայության գնալ մինչև Մաքենոց վանքը: Հարկ է կարծել, որ հայրապետի զբոսանքը կատարվել է ոչ առաջ, քան գարուն 874 տարվան: Նույն տարին Բուղան կռիվ էր մղում Աղվանից Աբու Մուսե իշխանի դեմ: Արաբ զորավարի բանակումն էր Սմբատ սպարապետը իր որդի Մուշեղի հետ: Կռիվը տևեց գրեթե մի ամբողջ տարի: Հետևյալ 855 տարին էր, երբ Բուղան հեռանալով Հայաստանից, հրամայեց Սմբատին միանալ իր կարավանին: Սմբատ նախքան հեռանալը ժողով գումարեց Երազգավորք և ընտրել տվեց Զաքարիային: Սա աշխարհական էր և մի օրվան մեջ բարձրացավ մինչև կաթողիկոսական աթոռը: Հիմք կա կարծելու, որ Ովայեցու մահից հետո հայրապետական աթոռը թափուր մնաց մի առ ժամանակ մինչև Զաքարիայի ընտրությունը, որ չէ կարող առաջ լինել, քան 855 թ.: Տեսանք, որ Թովմա Արծրունին նրա գահակալության առաջին տարին համարում է 304 Հայոց թ., որ է 856 թ., սկսած ապրիլից: Ակներև է, որ Ասողիկի հաշիվները ստույգ չեն: Ստույգ չէ նաև նրա ցուցումը, թե Աշոտ թագավորեց Գեորգի 12-րդ տարին, որ հիմնված է Թովմայի բնագրի հին վրիպակի վրա, ինչպես տեսանք:

[1] **Հովհաննես Կաթողիկոս**, էջ 76:

Աշոտի թագավորության սկզբնավորության մասին այլ աղբյուր չունինք հայ մատենագրության մեջ, քան Թովմա Արծրունին: Սա է միակ և հիմնական աղբյուրը, որից քաղել են մյուսները:

Արդ Թովմայի գիտությամբ Աշոտ մեռավ 339 թվին Հայոց, որ է 890 թ. ապրիլ 18 մինչև 891 թ. ապրիլ 18: Եվ որովհետև թագավորեց չորս տարի, այստեղից սխալ կլիներ հետևցնել, թե թագ կապեց 336 Հայոց թ. 887-888, սխալ որովհետև հայտնի չէ որոշակի, թե 339 թվի ո՞ր ամսին վախճանեց: Եթե մեռած է 890 թվին չորս տարին կհաշվի 886 թվից: Հովհաննես Կաթողիկոս մի նեցուկ է տալիս իր տեղեկությամբ, թե Վասիլի կենդանությանն է թագ կապել Աշոտ: Վասիլ մեռավ 29 օգոստոս 886 թ., հետևապես Աշոտի թագադրությունը կանուխ է, քան այս թիվը, և մահը կանուխ, քան 890 թ. օգոստոս 29: Ոչ մի հիմ չկա կասկածի ենթարկելու ո՛չ Թովմայի, և ո՛չ Հովհաննես Կաթողիկոսի արժանահավատությունը: Մնում է ներդաշնակել, հաշտեցնել: Եթե ենթադրենք անգամ որ թագադրությունը տեղի է ունեցել 886 թ. գարնան, թե ամառը, առաջ, քան 29 օգոստոսի, մահը կգա չորս տարի ուշ՝ 890 գարնան, թե ամառ, այսինքն՝ 339 Հայոց թ. ընթացքին, որ սկսվում է 890 թ. ապրիլ, ամսից, համաձայն Թովմայի:

Սակայն մի արգելառիթ հանգամանք կա: Հայ հնագույն գրչագիրներից մեկը, Լազարյան Ճեմարանի Ավետարանը գրված է ճիշտ 336 թվին Հայոց և գրիչն ասում է. «Գրեցաւ ի հայրապետութեան Գէորգայ Հայոց կաթաւղիկոսի եւ յիշխանութեանն Աշոտի **իշխանաց իշխանի,** ի տէրութեան Սմբատայ Բագրատունւոյ»: Ահա մի ժամանակակից, որ Աշոտին անվանում է **իշխանաց իշխան** 336 Հայոց թ. = 887 թվին: Նշանակում է Աշոտի թագավորությունն ուշ էր, քան 887 թիվը: Այս չէ հակասում Թովմային, բայց ընդհարվում է Հովհաննես Կաթողիկոսի վկայության հետ, որի համաձայն Վասիլ կենդանի էր թագադրության ժամանակ, այն ինչ եթե թագադրությունը 887 թվին դեռ չէր կայացել, նշանակում է Վասիլի մահից հետո է կայացել:

Այս հիշատակարանի դեմ խոսում է մի ուրիշ հիշատակարան: 1910 թվին Էջմիածնի մատենադարանը մտավ մի ձեռագիր Ավետարան XIV թե XV դարուց, բայց գրիչը գովական ջանքով արտագրել է նաև իր օրինակի հիշատակարանը, որ է. «Գրեցաւ ի սկիզբն թագաւորութեան Բագրատունեաց Աշոտոյ ձեռամբ անարժան Գրիգոր Մաշկեւորի ի ժամանակս հայրապետութեան Գէորգա կաթողիկոսի որ օծեաց զԱշոտ թագաւոր Հայոց ի թվ. մերում **գճլգ**, եւ քաղոց ամսոյ **Ժ** ի անուն սրբոյն Սքանչելագործին վանիցն»[1]:

Գրչության թերությունները պատկանում են հավանորեն անփույթ արտագրողին, ինչպես օծեաց փոխանակ աւծեաց: Վերջին նախադասությունը կրճատված է: Հին Ավետարանը գրված է եղել քաղոց **Ժ** և ի վանս հանուն

[1] **«Արարատ»,** 1910, հուլիս, էջ 623:

սրբոյն Սքանչելագործի, կամ ձեռագիրը ընդօրինակողի ձեռքն է ընկել ի վանիցն որ հանուն սրբոյն Սքանչելագործին: Կասկած չկա որ հիշատակարանը հին է և հարազատ: Մեզ հետաքրքրում է գրության ժամանակը, որ է 334 Հայոց թ. (**գճլդ** և ո՛չ **գճլգ**), այսինքն՝ 885 թ. ապրիլ - 886 թ. ապրիլ: Ահա մի անանկնունելի վկայություն, որ Աշոտ օծվել է թագավոր այս թվին: Ասողիկի խոսքը թե Աշոտ թագավորեց հինգ տարի առանձին արժեք է ստանում, մանավանդ, եթե ծագում է, ինչպես ենթադրեցինք, Շապուհ Բագրատունու պատմագրից: Հինգ տարին կբերե թագավորության սկիզբը 334 տարին, ինչպես հաշվի էր առել նաև Սամուել Անեցի: Հավանական է, որ Աշոտ թագավորած լինի եթե ոչ լրիվ հինգ տարի, ամեն պարագային ավելի քան չորս տարի: Ամիրապետից թագ ստանալը և օծումը կամ թագադրության հանդեսը, հարկավ, միաժամանակ չեն կատարված: Թերևս ժամանակագրական տարաձայնությունը բացատրելու է նրանով, որ մի դեպքում Աշոտի թագավորությունը հաշված է օծման հանդեսից, մյուս դեպքում՝ թագը ստանալու օրից: Կարծում ենք, որ 886 թվի սկիզբները կարող են ծառայել հաշտության կետ տարաձայնությունների:

Սակայն մեծագույն խոչընդոտը մնում է Լազարյան Ճեմարանի ձեռագրի հիշատակարանը: Խոչընդոտը կարելի է հարթել կամ ենթադրելով, որ թագադրության հանդեսը տեղի է ունեցել 887 թվից հետո, ուստի գրիչը տակավին թագավոր չէ անվանում Աշոտին, կամ իշխանաց իշխան զուգակշռում է Աշոտի պաշտոնական տիտղոսը *ἄρχων τῶν ἀρχόντων*, ընդունված բյուզանդական արքունիքից: Տարաձայն վկայությունների մեջ դժվար է ժխտել մի կետ, որ Աշոտի թագադրության ժամանակ Վասիլ տակավին կենդանի էր: Այս կետը համարում ենք հաստատուն: Հովհաննես Կաթողիկոս չէր կարող հերյուրել այնպիսի մի նշանավոր փաստ, որպիսին Վասիլի հարաբերությունը նորապսակ Աշոտի հետ: Թվական հաշիվները կարող են շփոթվել մանավանդ, երբ զանազանությունը մեծ չէ, բայց մեծազոր կայսրի անունը չէ կարող երևակայության պտուղ լինել:

Աշոտի տարիքը ևս քննության պետք ունի: Վարդան վկայում է, որ Աշոտ մեռած է 71 տարեկան հասակում[1]: Տեղեկությունն առել է Ասողիկից, իսկ սա՝ Շապուհ Բագրատունուց: Ասողիկի բնագիրը խաթարված է: Վարդան ավելի լավ օրինակ է ունեցել, բայց ոչ բոլորովին հարազատ:

Աշոտի հայրը, Սմբատ, պատանդ էր արաբական արքունիքում և ազատ արձակվեց 275 Հայոց թ. = 826-827[2]: Արդ վերադարձից հետո էր, որ Սմբատ ամուսնացավ Դավթի քրոջ հետ և ունեցավ երկու զավակ, Աշոտ և Շապուհ,

---

1 **Վարդան**, էջ 86:

2 **Ասողիկ**, էջ 106:

նաև մի դուստր, որ կնությամբ գնաց Տայքի և Կղարջքի Բագարատ իշխանին[1]: Այս հաշվով ավագ որդու, Աշոտի, ծնունդը կարող էր պատահել առառավելն հետևյալ 827-828 տարվան: Ապա մահվան տարին, 890 թվին Աշոտ չէր կարող 71 տարեկան լինել: Կարծում ենք, որ ՀԱ սխալ ընթերցված է փոխանակ ԿԱ= 61: Արդարև 890-61 = 829, որ է ծննդյան ստույգ տարին:

## ԲԱԳՐԱՏՈՒՆԻՔ ՎՐԱՍՏԱՆՈՒՄ

Վասակ Բագրատունին թողեց խռովահույզ Հայաստանը 775 թվի ապստամբության օրերին, անցավ Կղարջք և հիմը դրեց Բագրատունյաց վրացի ճյուղին: Մի նոր և փառավոր շրջան բացվեց Վրաց պատմության մեջ:

Մինչև Բագրատունիների երևումը Վրաստանի անցյալը բավականին մութ է և, որքան հայտնի է, անգույն է: Հիշվում են ցանուցիր իշխանական թե թագավորական անուններ, որոնք վկայում են, որ նման կարգեր են տիրել, ֆեոդալական կարգեր, ինչպես Հայաստանում և քաղաքական թե քաղաքակրթական կյանքը հոլովել է համաշավիղ ընթացքով և կրել հարափոփոխ պայմանների նույն վերուվայրը ինչ որ Հայաստան: Նյութերի պակասությունը, տրամադրելի ցանցառ տեղեկությունները չեն ներում որևէ գաղափար կազմել անցյալի ամբողջական պատկերի մասին: Այս տարտամ վիճակը վերանում է, երբ Բագրատունիք ոտ են կոխում Վրաստան: Երկիրը վերածնվում է քաղաքականապես, մտնում նոր փուլի մեջ և ընթանում ուրույն և փայլուն ուղիով:

Մեծ է Բագրատունյաց դերը հայ պատմության մեջ, բայց անհամեմատ ավելի նշանավոր գործոն եղան նրանք վրական հողի վրա: Բավական է հիշել, որ վրական տոհմածառը հաշվում է երեքհարյուրից ավելի անձ, որից վաքսունը` թագավոր: Ուստեր արժակելով ամեն կողմ Վրաց Բագրատունիք կարողացան իրենց հովանու տակ առնել վրական ցեղերի ամբողջությունը: Մեզ հետաքրքրում է մասնավորապես նրանց Վրաստանում հաստատվելը և վրաց քաղաքական վերածնության սկզբնավորությունը նրանց շնորհիվ:

Ո՞վ էր Վրաց Բագրատունիների նախահայրը:

Երեք կարգի նյութեր կան այս մասին, հայ, հույն և վրացի: Հակասական չեն, բայց նրանց համերաշխությունը պարզելու համար պետք կա մասնավոր քննության: Հայ աղբյուրը որոշ է և դրական[2]: «Բայց ասելի է աստ զսկիզբն թագաւորացն Հայոց եւ Վրաց, - ասում է Վարդան, - որք ի Բագրատունեաց անտի սերեցան: Քանզի, որպէս ասացաւ, զկնի քաջին

---

[1] **Վարդան**, էջ 79:

[2] «**Հայրենիք**»-ի մեջ լույս տեսած հոդվածիս մեջ մի անախորժ վրիպակ կա. փոխանակ «**հնության** տեսակետից» տպված է «**հայության** տեսակետից»:

Վարդանայ իշխանք Հայոց կացին ըստ դիպելոյ մինչեւ ի Սմբատ Բագրատունի, եւ զկնի նորա **Աշոտ**, որդի Վասակայ, զոր կուրացուցին Մամիկոնեանքն: Սմա լինին երկու որդիք, Սմբատ՝ նախնի թագաւորացն Հայոց եւ Վասակ՝ սկիզբն թագաւորացն Վրաց, որոյ որդին Ատրներսեհ, սորա՝ Աշոտ, սորա՝ Բագարատ, որոյ եղբայր՝ Գորամ: Հետ սմա Դաւիթ որդի Բագարատայ, որ սպանաւ ի Գորամայ հօրեղբօրէ իւրմէ, որոյ որդին Ատրներսեհ, սորա որդին Դաւիթ: Սմա եղբօրորդի Գուրգէն որոյ որդին Բագարատ որ առ իւր կին զդուստր Սենեքերիմայ թագաւորին Վասպուրականի: Այս է կարգն:

«Իսկ Հայոց նախնւոյն Սմբատայ՝ որդի Աշոտ Մսակեր, որոյ որդին Սմբատ Խոստովանողն, որոյ որդին այս Աշոտ Բարեպաշտ, որ անուանեցաւ իշխանաց իշխան ի յԱլեայ որդւոյ Վահէի հրամանաւ ամիրապետին Ջափրայ»[1]:

Այս սերնդաքանությունը կարտահայտվի հետևյալ պատկերով:




Տարաբախտաբար հայտնի չէ, թե Վարդան ո՞ւմ է պարտ այս կարևոր տեղեկությունը Վրաց Բագրատունիների ծագման մասին[2]: Տեղեկությունը քաղված է լավ աղբյուրից և հաստատվում է ուրիշ նյութերի քննությամբ:

Կոստանդին Ծիրանածին կայսրը պատմում է, որ Վրաց կյուրապաղատները պարծենում են, որ սերում են Դավիթ մարգարեից և Ուրիոսի կնոջից և որովհետև նույն սերնդից է Մարիամ Աստվածածին, ուստի և ազգա-

[1] **Վարդան,** էջ 81-82:

[2] Մարկվարտի հետ մենք ևս կարծում էինք, որ աղբյուրը Շապուհ Բագրատունու կորած երկն է: Սակայն դժվար է պնդել այս ենթադրության վրա: Վարդան առել է մի աղբյուրից ուր թված են եղել Վասակից մինչև Սենեքերիմի փեսան, որ էր ո՛չ թե Բագարատ, այլ սորա որդի Գեորգի: Ինչպես երևում է Վարդանի բնագիրը կամ խանգարված է կամ ինքն է սխալ ընդօրինակել իր աղբյուրը: Պետք է կարդալ. «սորա որդի Դաւիթ, սմա եղբօրորդի <Բագա-

կան են համարվում Ս. Կույսին: Ասում են, որ երկու եղբայր, Դավիթը և Սպանդիատ, տեսիլ են տեսնում և թողնում Երուսաղեմ և հեռանում Պարսից կողմերը ուր այժմ ապրում են վրացիները: Աստված մի զարմանալի հատկություն էր շնորհել Սպանդիատին: Սրա մարմինը բոլորովին անխոցելի էր պատերազմներում: Վիրավորել կարելի էր միմիայն սիրտը, որ սակայն պաշտպանված էր զրահով: Այս կարողությամբ եղբայրներին դյուրին էր հաղթել պարսիկներին և տիրանալ երկրին: Երբ Հերակլ կայսրն արշավեց պարսից դեմ, երկու եղբայրները հարեցին նրան և նրա ձեռնատվությամբ ձեռք բերին շատ հողեր:

Սպանդիատ մեռավ անզավակ, իսկ Դավթից ծնեց Բագարատ, Բագարատից՝ Աշոտ, Աշոտից՝ Ատրներսեհ, որին Լևոն կայսրը մեծարեց կյուրապաղատության պատվով: Երուսաղեմից գաղթելե հետե այն երկիրը ուր ապրում են ցայժմ անցել է չորս թե հինգ հարյուր տարի, մինչև ինդիկտիոն 10, արարչության 6460 թիվը, Կոստանդին և Ռոմանոս Ծիրանածին կայսրերի թագավորությունը[1]:

Այս հետաքրքրական զրույցը ազատ չէ տարաբախտաբար անհարթություններից: Անտարակույս պատմողը, թե գրի առնողը շատ բան շփոթել է: Ուրիոս Քետացին Դավթի զորականներիցն էր, որին Դավիթ սպանել տվեց և առավ նրա գեղեցիկ կնոջ Բերսաբեին[2]: Դավիթ և Սպանդիատ ուրեմն սրանց սերնդից էին, *ἐκ τῶν παίδων*, որ չի նշանակում անհրաժեշտորեն, որ անմիջական զավակներն էին: Ստորև կքննենք այս երկու կարծեցյալ նախահայրերի ավանդությունը: Այժմ մեզ հետաքրքրում է նրանց սերունդը:

Արարչության տարին և ինդիկտիոն համապատասխանում է Քրիստոսի ծննդյան 952 թվին, երբ Կոստանդին գահի վրա էր, թագակից ունենալով իր որդի Ռոմանոսին: Դավիթ և Սպանդիատ եկած պետք է լինեն այս թվից չորս կամ հինգ հարյուր տարի առաջ, այսինքն՝ 452 կամ 552 թվին: Զարմանալի է, որ այսքան ժամանակամիջոցում Դավթին վերագրվում է միմիայն երեք սերունդ, որդի, թոռն և թոռնորդի: Գիծը չի հասցրած մինչև 952 թ. հակառակ խոստումի, այլ մինչև Լևոն կայսր (886-912), որից Ատրներսեհ ստացավ կյուրապաղատություն: Ատրներսեհից հետո հայտնի էր Աշոտ Կյուրապաղատ, որին քաջ ծանոթ է մատենագիր կայսրը, բայց այստեղ չէ հիշված: Ատրներսեհ այցելել էր մայրաքաղաք մերձ 822 թվին և մեծ ընդունելություն

---

րատ, որոյ որդի> Գուրգէն, որոյ որդի Բագարատ, <որոյ որդի Գիորգի> առ իւր կին զդուստր Սենեքերիմայ»: Այս ծննդաբանությունը չէ կարող լինել Մխիթար Անեցուց, որին Վարդան հիշում է քանի մի էջ հետո և որից առնելով պատմում է «յաղագս Վրաց թագաւորացն սկզբանն», էջ 91, ուր Գուրգեն համարվում է որդի Աշոտի Ողորմածի, մինչդեռ անծանոթ աղբյուրից քաղած ծննդաբանության մեջ Գուրգեն Դավթի եղբորորդին է:

[1] **De Administrando Imperio,** գլ. 45, էջ 197-199:

[2] **Բ Թագավոր.,** ժա:

գտել Ռոմանոս Լեկապենոս կայսրի կողմից: Կարելի է կարծել, որ այս զրույցը գրի առնված լինի Ատրներսեհի կամ իր ուղեկիցներից մեկի բերանից նույն 922 թվին և Կոստանդին գտած լինի պալատական դիվանում և մտցրած իր երկի մեջ առանց ուշադիր լինելու նշանակել նաև հաջորդ կյուրապաղատների անունները մինչև իր ժամանակ: Կամ Կոստանդին կայսրի բնագիրը հարազատ վիճակի մեջ չէ հասած մեզ, կամ պետք է ընդունել, որ օգտվել է մի թղթից, որ գրված է եղել Ատրներսեհի այցելության տարին:

Աշոտ Կյուրապաղատ ևս մայրաքաղաք էր գնացել կյուրապաղատության պատիվն ստանալու առթիվ և Կոստանդինի ու Ռոմանոս Լիկապենոսի օրով: Այնուհետև հողային վեճեր ունեցավ Աշոտ Կյուրապաղատը կայսրության հետ: Պետք եղավ ուղարկել կայսրի մոտ իշխան Չորտվանելին, որ նշանավոր վանական Թոռնիկի հայրն էր: Չորտվանել մայրաքաղաք էր մոտավորապես 949-950 թվականներին: Հավանական էր ենթադրել, որ հենց այս վեճերի առթիվ է, որ Կոստանդին կայսրը հետաքրքրվել է կյուրապաղատների պատմությամբ և թերևս նույն Չորտվանելից գրի անցրել ինչ որ մեզ պատմում է: Սակայն այս հավանականության արգելք է այն պարագան, որ կյուրապաղատների գիծը հասցրած է մինչև Ատրներսեհ: Կրկնում ենք կամ բնագիրը աղճատ է կամ զրույցը գրի է առնված ավելի առաջ, քան Կոստանդինի ժամանակ, 952 թիվը[1]:

Մի ուրիշ և ավելի ծանր սխալ, որ նկատվում է զրույցի մեջ և որ չէ սպրտել Մարկվարտի սուր աչքից: Դավթի սերնդի շարքը՝ Դավիթ, Բագարատ, Աշոտ, Ատրներսեհ ուղիղ չէ: Առաջին և երրորդ անդամները փոխել են իրենց տեղերը, այսինքն՝ պետք է կարդալ՝ Աշոտ, Բագարատ, Դավիթ, Ատրներսեհ: Այս է շիտակը, համապատասխան Վարդանի և «Վրաց տարեգիր̀ք»-ի տեղեկության: Անշուշտ, Դավիթ մարգարեի, կյուրապաղատների կարծեցյալ նախահոր, անվան ազդեցությամբ է բացատրելու տեղի ունեցած շփոթությունը պատմողի, թե գրի առնողի կողմից:

Դավթի (իմա՝ Աշոտի) հոր և պապի, Ատրներսեհի և Վասակի մասին հիշատակություն չկա: Խոսք չկա նաև կյուրապաղատի հայկական ծագման մասին: Արդյոք զրույցին անծանոթ էին այս կետերը, թե սղված են այնքան սեղմ պատմվածքի մեջ, դժվար է ասել: Դավիթը ոչ 452 թ. և ոչ 552 թվի անձ

[1] Կոստանդին հիշատակում է Աշոտին նույն De Adm. Imp. գործի հաջորդ 46 գլխի մեջ, էջ 207, *τοῦ Ἀδραvασῆ τοῦ κουροπαλάτου, τοῦ πατρὸς τοῦ ἀρτίως Ἀσωτίου τοῦ κουροπαλάτου*, այլև էջ 213, *Ἀσώτιον τὸν υἱὸν Ἀδραvασῆ τοῦ κουροπαλάτου*, «Վրաց տարեգիրք»-ի համաձայն, Ատրներսեհին հաջորդեց իր որդի Դավիթ († 937) և ապա սորա եղբայր Աշոտ: Մարկվարտի կարծիքը, թե Աշոտ որդին էր ոչ այս Ատրներսեհի, այլ մի ուրիշ համանուն անձի, հիմնավոր չէ:

չէր, այլ ութերորդ դարու վեջի և իններորդի սկզբի: Ջրույցի մեջ տեսնում ենք, թերևս առաջին փորձը հնացնել կյուրապաղատների ծագումը, բայց տակավին չկա այն կեղծ ծննդաբանական շղթան, որ պիտի հորինվեր հետագայում՝ ապացուցանելու ծագման հնությունը: Սպանդիատի մասին կխոսենք ստորև: Հետևենք առ այժմ նրա եղբոր Դավթի բախտը:

Բարեբախտաբար վրաց մատենագրությունը պահել է Բագրատունիների ծագման հնագույն վարկածը: Ճիշտ է վրական տեղեկությունները շատ խառնակ են: Բայց շինծու զրույցները չեն խեղդել իրենց ծալքերի մեջ պատմական սաղմը:

Արքայազն Վախուշտի կազմել է «Վրաց կյանքը», օգտվելով զանազան ձեռագրական նյութերից, աշխատել է հարթել տարբերությունները և մի ուղիղ գծի վերա շարել Վրաստանի իշխողների հաջորդությունը: Սակայն դժվար չէ նկատել, որ կան հին տեղեկություններ, որ հետագա գրիչները խաքարել են: Այդ կարգի տեղեկություն ենք համարում ինչ որ պատմված է Արչիլ թագավորին նվիրված հատվածում: Արչիլի պատմությունը պատկանում է Ջևանշերի գրչին, որ իրեն համարում է ժամանակակից և անգամ փեսա Արչիլի: Այս հավակնությունը պարզ կեղծիք է: Գեթ այն ձևով, ինչպես որ իր գործը հասել է մեզ չի կարող վերագրվել ժամանակակից գրչի, առասպելականը մեծ տեղ բռնելով այնտեղ[1]: Կեղծ-Ջևանշերը պահել է մեզ ամեն պարագային Բագրատունիների ծագման վրական հնագույն և ստույգ վարկածը:

Վրաց ազգային հինավուրց իշխանական տունը սպառեց ութերորդ դարու վերջին Ջևանշեր իշխանի մահվամբ, ըստ Վախուշտի, 787 թվին: Ջևանշերի հայրը և նախորդը Արչիլն էր, որի մասին պատմվում է հետևյալը: Արչիլ վերադառնում էր Եգերքից, երբ Խիդար իջևանում իրեն ներկայացավ Դավիթ մարգարեի սերնդից մի իշխան, որ էր Ատրներսեհ Կույրի եղբորորդի Ատրներսեհը: Եկվորի հայրը ազգակից էր Բագրատունի տան և հույներից իշխան կարգված Հայոց կողմերում, ապա ապաստանել էր Կղարջք Մրվան Ղրուի արշավանքների միջոցին և մնացել այնտեղ Գուռամ Կյուրապաղատի զավակների մոտ: Սրա որդին, եկվոր Ատրներսեհը, այժմ խնդրում էր Արչիլից մի կալված հպատակության պայմանով: Արչիլ նրան զիջեց Շուլավեր և Արտան (= Արտահան):

Արչիլի մոտ եկան նմանապես նույն Ատրներսեհ Կույրի երեք եղբոր-

---

[1] **Brosset**, էջ 253, ծանոթ. 1, բերում է մի հիշատակարան, ուր ասված է, թե «Արչիլի վկայաբանությունը, Վրաց թագավորների պատմությունը և վրաց դարձը գրել է Լեոնտի Մրովել, Ռուիսի եպիսկոպոսը, և այժմ գրում եմ ես Յոհանե Դեկանոս»: Հետևապես վրաց պատմության հնագույն շրջանի, սկզբեն մինչև Արչիլ, բուն հեղինակն է Լեոնտի եպիսկոպոսը: Յոհանե, հավանորեն, սոսկ գրիչ չէ, այլ հեղինա՛կ Արչիլի որդիների՝ Յովանեի և Ջևանշերի պատմության, որ հետևում է Արչիլի վկայաբանության:

որդիները, նրանք որ խարել էին իրենց հորեղբոր աչքերը, եկան Տարոնից Շաքի և հաստատվեցին այնտեղ Արչիլի հավանությամբ, ու գրավեցին երկիրը մինչև Գուլդուլա:

Նույն ժամանակները մի քանի բդեշխ տեղ չգտնելով Կղարջքում, գնացին Տայք և բռնեցին Կալմախ ժայռը, մի մասն էլ գնաց Կախեթ[1]:

Արդ կասկած չկա, որ Ատրներսեհ Կույրը այլ ոք չէ, քան Աշոտ Կույրը: Հոր և որդու փախուստը միևնույն անցքի կրկնությունն են, ինչպես նկատել է Մարկվարտ: Մեր կարծիքով ոչ միայն անցքն է կրկնված այլև անձը, այսինքն՝ հայր և որդի միևնույն անձն են, Վասակ Բագրատունին: Սակայն թվում է, թե այստեղ լսվում է և մի հին դեպքի արձագանք: Ատրներսեհի հայրը որպես թե փախել էր Կղարջք Մրվան-Ղրուի ժամանակ: Մրվան-Ղրու կրկնակի անունը կրկնակի դեմք է ներկայացնում: Վրացերեն ղրու նշանակում է խուլ: Այս արատն ուներ Աբդլազիզ ոստիկանը, որ ուղարկվեց Հայաստան Վալիդի օրով (705-715) և որին Ղևոնդ պատմագիրը կոչում է խուլ լսելեօք: Ութերորդ դարու սկզբում մեծ խռովություններ ծագեցին Հայաստանում արաբների դեմ և Հունաց կայսրի դրդմամբ: Խռովությունների հետևանքն եղավ Նախճվանի և Խրամի ահավոր աղետը: Հայ նախարարները զոհ գնացին արաբական նենգության և ողջակեզ եղան եկեղեցու մեջ: Ապստամբության ոգին Սմբատ Բագրատունին էր, որ արժանացել էր կյուրապաղատության պատվի և որ կարողացավ մի քանի նախարարների հետ փախչել և ապավինել կայսեր: Սա տվեց նրանց «զքաղաքն որ անուանեալ կոչի Փոյթ ի կողմանս Եգեր աշխարհին եւ բնակեցան ի նմա ամս զ»:

Նոր ոստիկանը, խուլ Աբդլազիզ, պատվեր ուներ խաղաղացնել երկիրը: Սա հարաբերության մեջ մտավ Սմբատ կյուրապաղատի հետ և համոզեց վերադառնալ: Փախստականները վերադարձան մոտ 712 թվին:

Արդ եթե չենք ուզում Ատրներսեհի հոր փախուստը ձուլել իր որդու փախուստի հետ, պետք է ընդունել, որ Սմբատ Բագրատունու Եգերքի Փոթի քաղաք ապաստանելն է, որ անդրադարձել է որպես Ատրներսեհի հոր փախուստ Կղարջք: Ղրու «խուլ» մակդիրը, որ վերաբերում է Աբդլազիզին և ոչ Մրվանին երաշխիք է այս ենթադրության:

Մրվան նշանակվեց ոստիկան 732 թվին և Աշոտին կարգեց իշխանաց իշխան: Աշոտի հակառակորդները նրան կուրացրին 17 տարի իշխանություն վարելուց հետո, ուրեմն 749 թվին: Նրա հովանավոր ոստիկան Մրվան գրավեց խալիֆայական գահը 744 թ. և սպանվեց 749 թ.: Հավանական է, որ նրա մահից անմիջապես հետո տեղի ունեցավ և Աշոտի աղետը:

«Վրաց տարեգիրք»-ն ևս գիտե, որ Մրվան եկավ Էշինի, այսինքն՝ Հիշամի (724-743) կողմից: Արչիլի պատմության մեջ հիշվում է, որ Մրվան-Ղրուից 50 տարի հետո արաբները մտան Վրաստան և մտնողը մի

կուսակալ էր, անունը Ջիջում, որ կոչվում էր նաև Ասիմ: Սա էր, որ նահատակել տվեց Արչիլին: Եթե հիսուն տարին հաշվենք 732 թվից, երբ եկավ Մրվան, կստանանք նահատակության տարին մոտ 781 թիվը: Ղևոնդ պատմագրից հայտնի է, որ Խազմ անուն արաբ ոստիկան սպանեց մարտիրոսական մահով Համազասպ և Սահակ Արծրունի իշխաններին Դվինում մկզ (կարդա՝ մղը) Հայոց թվին, հայտնության օրը, այսինքն՝ 786 թ. հունվար 6, Մուսե խալիֆի օրով: Այս խալիֆի ժամանակ սպանեցին նաև «զիշխանն Վրաց չարաչար մահուամբ, զի վերամբարձ առեալ զոտիցն եւ զձեռացն ընդ մէջ կտրէր զմատաղութիւն հասակի նորա»[1]:

Այս անանուն իշխանն, անտարակույս, Արչիլն է, ինչպես արդեն նկատել են Բրոսսե և Մարկվարտ: Նահատակության տարին և ոստիկանի անունը երաշխիք են: Հայ պատմագրի Խազմ ոստիկանը Խուզիմա բին Խազիմ արաբն էր, նույն ինչ որ Ջիջում-Ասիմ, որ աղավաղված է թերևս սխալ ընթերցումի հետևանքով, փոխանակ Խիզում-Ասիմի:

Այսպիսով, որոշվում է Արչիլի ժամանակը: «Մատաղութիւն հասակի» խոսքը ցույց է տալիս, որ Արչիլ չէր կարող հիսուն տարի իշխած լինել, որպիսին հաշվում է նրա վկայաբանության հեղինակը, անշուշտ, կամենալով ուղղել սխալ ժամանակագրությունը և հասցնել նրան մինչև 786 թիվը:

Արչիլի մոտ Ատրներսեհ եկավ 775 թվին: Ատրներսեհ ինքը Վասակն է: Արճեշի ճակատի հերոսը Մուշեղ Մամիկոնյանն էր, որ իր կողմը քաշեց Սմբատ Բագրատունի իշխանին, որ սպարապետ էր և Մուշեղի փեսան: «Կոչէին ի թիկունս օգնականութեան զՎասակ որդի Աշոտոյ, զեղբայր Սմբատայ սպարապետի ի տոհմէ Բագրատունեաց եւ զզօրսն նորին»[2]: Վասակ այդ միջոցին Դարոյնք էր, արդի Բայազիտ, որ Բագրատունյաց կալվածն էր: Հայտնի չէ թե Վասակ արձագա՞նք տվեց կոչին և գնաց եղբորն օգնության, թե մեկուսացավ մյուս Բագրատունիների նման: Ամեն պարագային 775 թվի ճակատից հետո այլևս չի հիշվում: Ապստամբ իշխաններից, որոնք կենդանի մնացին արյունահեղ մարտից հետո, հետապնդվեցին արաբ իշխանության կողմից և մահվան դատապարտվեցին, ինչպես Արծրունի եղբայրները: Ակներև է, որ Վասակ հեռացել էր Հայաստանից և իր ուժերով քաշվել հավանորեն Սպեր, իրենց տոհմական կալվածը: Այստեղից էլ պետք է անցներ Կղարջք: Ի՞նքը գնաց Կղարջք, թե իր որդի Ատրներսեհը, որոշ չէ: Եթե Ատրներսեհը, որ Արչիլին դիմեց, եկել էր Հայաստանից, նա միայն Վասակ կարող էր լինել: Իսկ եթե ճշմարիտ է, որ Ատրներսեհի հայրը ևս փախած է եղել Կղարջք, պետք է կարծել, որ խոսքը վերաբերում է Վա-

---

[1] Ղևոնդ, գլ. Խ:

[2] Նույնը, գլ. ԼԴ:

սակին, որ 775 թվին ապաստանել էր Սպեր, որտեղից հետագայում իր որդին գնաց Արչիլի մոտ: Հոր փախուստը տեղափոխած է Մրվան-Դրուի ժամանակ, հավանորեն, շփոթելով Սմբատ Կյուրապաղատի համանման արկածի հետ, ինչպես վերև հիշեցինք:

Դժվար է անտեսել Վարդանի կրկնակի վկայությունը, թե Վասակ ուներ Ատրներսեհ անունով որդի: Մեկը հիշեցինք վերև: Երկրորդ անգամ կրկնում է նույնը Ատրներսեհի որդու Աշոտի Վրաց իշխան կարգվելու առթիվ: «Եւ տայր իշխանն Իսմայէլի Աշոտի որդւոյ Ատրներսեհի որդւոյ Վասակայ որդւոյ Աշոտոյ Հայոց իշխանի զերկիրն Վրաց, որոյ երթեալ հնազանդեցուցանէ ինքեան եւ կայսրն առաքէ նմա պատիւ կիւրապաղատութեան»[1]:

Կայսրը Լեոն V Հայկազն է (813-820): Վասակ և Ատրներսեհ այնքան առաջացել էին, որ երկու հարևան մեծ պետությունները հնարավոր գտան Ատրներսեհի որդուն Աշոտին բարձր դիրքի կոչել: Վարդան այս տեղեկությունը պարտական է Շապուհ Բագրատունուն, ուստի և անպայման հարգի է: Ատրներսեհը հետևապես ո՛չ թե Ատրներսեհ Կույրի, այսինքն՝ Աշոտ Կույրի եղբորորդին է, այլ թոռը: Վասակի անունը մոռացության է տված:

Մյուս կողմից վրաց մի ուրիշ աղբյուր համարում է Ատրներսեհին որդի Ատրներսեհի: Արչիլի որդու և հաջորդի՝ Ջևանշերի պատմության մեջ ասված է, որ Ջևանշեր առավ Ատրներսեհի դուստրը Լատավրե: Ջևանշերի մայրը ընդդիմանում էր այս ամուսնության, բայց երբ իմացավ, որ Ատրներսեհ Դավիթ մարգարեի ցեղից է, հավանություն տվեց և օրհնեց պսակը: Ջևանշեր դեռ կենդանի էր, երբ Ատրներսեհ տեր դարձավ Կղարջքի, Շավշեթի, Աջարայի, Նիգալի, Ասեաց-Փորի, Արտահանի և ստորին Տայքի: Մինչ այդ բոլոր այս երկիրները Վախթանգի սերունդի ժառանգությունն էր: Ատրներսեհ հաստատվեց Կղարջք, ուր և մեռավ: Իր որդին Աշոտ Կյուրապաղատ հաջորդեց Ջևանշերին և հիմ դրեց Բագրատունյաց հարստության: Հետևում է մի նորալուր ծննդաբանություն Ատրներսեհի, որպես թե սրա հայրն էր Ներսեհ, Ներսեհի հայրը՝ Վարազբակուր, սրա հայրը՝ Գուռամ և վերջինիս հայրը՝ Ստեփան I[2]:

Ջևանշերի կենսագիրը չէ հորինել այս ծննդաբանությունը, այլ առել է մի երկից, որի հեղինակն է Սմբատ: Միայն Սմբատի գործում չէ ասված, որ Ներսեհի հայրը Վարազբակուրն էր: Ներսեհ, իր որդի Ատրներսեհ և սրա որդի Աշոտ Կյուրապաղատ կազմում են ուրույն գիծ: Սմբատի նպատակն է եղել իսկապես կապել Ներսեհին Վարազբակուրի և նրա նախնիքների հետ, և Ջևանշերի կենսագիրը իրավունք ուներ Ներսեհին Վարազբակուրի որդի

---

[1] **Վարդան**, էջ 77:

[2] **Վախուշտի**, I, էջ 259:

անվանելու, բայց և այնպես ուշադրության արժանի է, որ Սմբատ այդպես չէ վարվել: Թվում է, թե սա հավատարիմ է մնացել մի ստույգ ավանդության: Ներսեհ անունն այստեղ համազոր է Ատրներսեհի, սրա կրճատումն է: Ճիշտ այսպես Վարդան պատմագիրը Սմբատ թագավորի ժամանակակից Վրաց Ատրներսեհ թագավորին մի անգամ անվանում է Ատրներսեհ, մյուս անգամ Ներսեհ[1]:

Արդ՝ Ատրներսեհի հայր Ներսեհը (իմա՛ Ատրներսեհը) ո՞վ կարող է լինել: Տեսանք, որ Ատրներսեհին եղբորորդի է կոչված Ատրներսեհ Կույրի: **Եղբորորդի** գրչի սխալ է փոխանակ **որդի**: Ատրներսեհի եղբորորդիք էին Տարոնից եկած երեք եղբայրները, որոնց համար չէ ասված, թե Ատրներսեհի եղբայրներն էին: Ասել է, թե Ներսեհ-Ատրներսեհը նույն Ատրներսեհ Կույրն է: Սրանով ուժ է ստանում վերև հայտնած կասկածս, որ Արչիլին դիմող Ատրներսեհը ոչ թե Վասակի որդին է, այլ ինքը՝ Վասակը: Արդարև հետևյալ ճյուղագրությունը՝




ևս վկայում է, որ Ատրներսեհ նույն Վասակն է, սրա վրական անունը: Ստիպողական չէ համառել այս ենթադրության վրա, եթե Վարդան Շապուհից է քաղել այն տեղեկությունը, թե Վասակ և Ատրներսեհ հայր և որդի են: Բայց և անտեսել չենք ուզում վրական կրկնակի ավանդությունը, որ պատահաբար պահվել է որպես վերջին դողանջ անհետացող ստույգ պատմական հիշողության:

Վրաց Բագրատունիների հայկական ծագումը մոռացվում է կամա, թե ակամա, տեղի տալով նոր զրույցների: Խորենացու տեսությունը, թե Բագրատունիք հրեական ծագում ունին թևավորում է վրաց միտքը հայ և վրացի Բագրատունիների համար ընդհանուր նախահայր գտնելու ջանքի մեջ: Այդ նախահայրը Դավիթ մարգարեն է: Այս միտքը ևս ծագած է նախ հայ գետնի վերա: Ճշմարիտ է, Խորենացին չէ տալիս Դավթի կամ նրա որդու Սողոմոնի

[1] **Վարդան**, էջ 82՝ **Ատրներսեհ**, էջ 87՝ **Ներսեհ**:

անունը, բայց իրեական ծագումն ավետելուց հետո խիստ գայթակղիչ է դառնում կանգ առնել սաղմոսերգու Դավթի և Իմաստուն Սողոմոնի վերա:

Աշոտ Մսակերի որդու Բագարատի որդիներից մեկը կրում էր արդեն Դավիթ անունը: Բագարատ կալանավորվեց 851 թվին, ուստի Դավթի անունը այս թվից առաջ է: Թերևս ավելի հին է Աշոտ Սահակյանի որդու Դավթի անունը, եթե ընդունենք հայր Ակինյանի հետ, որ Վարդանի հիշած Աշոտը չէ Մսակերը, այլ Աշոտ Կույրի հորեղբոր որդի Սահակի զավակը: Նույն 851 թվի շարժումների միջոցին ծանոթ է նաև Սողոմոն անունով մի Բագրատունի իշխան[1]: Վրաց Բագրատունիների մեջ Դավիթ անունը երևան է գալիս առաջին անգամ Աշոտ Կյուրապաղատի որդու Բագարատի († 876) օրով, որի որդին կոչվում էր Դավիթ († 881) և ծնված էր Սմբատ Խոստովանողի դուստրից:

Դավիթ և Սողոմոն անունները արդեն ապացույց են, որ Խորենացու ենթադրությունը հաստատուն հող է գտել և անգամ ձգտում առաջ բերել իրեական ծագումը հասցնելու մինչև Դավիթ մարգարեն և Սողոմոն Իմաստունը, իրեական անցյալի ամենափայլուն դեմքերը:

Այստեղից օգտվել է վրաց ազգայնական միտքը և հերյուրել մի զրույց, նպատակ ունենալով ցույց տալ, որ վրաց Բագրատունիները չեն սերում հայ Բագրատունիներից, այլ որ երկու ճյուղերն էլ միևնույն ծագումն ունեն և միևնույն հնությունը: Ի՞նչ կերպով: Պատասխանը տալիս է Սմբատ որդի Դավթի, անվանենք Սմբատ Դավթյան, որի գործը հրապարակ հանեց վրաց հայտնի բանասեր Ե. Թաղայշվիլի[2]:

Սմբատ սկսել է Ադամից և սրա սերունդն ուղիղ գծով հասցրել մինչև Դավիթ և իր որդի Սողոմոն, որ Ադամի 33-րդ սերունդն է ներկայանում: Այնուհետև շարունակել է գիծը մինչև Քրիստոս, մինչ Հովսեփ և իր եղբայր Կլեոպ, 60-րդ սերունդ: Անունների շարքը համաձայն է Հին և Նոր Կտակարանի տվյալներին: Բրոսսեի հրատարակության մեջ պակաս անուններ կան, բայց խնդիր չէ: Շարքը շարունակել է մեր հեղինակը, հնարել նոր անուններ և հասցրել մինչև ոմն Սողոմոն 88-րդ սերունդ Ադամից: Ահա այս Սողոմոնի յոթ որդիներն են, որ դարձան Բագրատունիների նախահայրեր:

Ուշադրության արժանի է Սողոմոն անունը: Սմբատ ընդունել է շրջուն կարծիքը, թե Բագրատունիք սերում են Սողոմոնից, բայց որովհետև դժվար էր Բագրատունիների սերնդական գիծը տանել մինչև Սողոմոն, նախընտրել է Սողոմոնի գիծը իջեցնել մինչև մի շատ ավելի մերձավոր Սողոմոն,

[1] **Թովմա Արծրունի**, Գ, գլ. 14, էջ 230:

[2] **«Երեք ժամանակագրություն»** (Տրի խրոնիկի) ռուսերեն նյութերի ժողովածու Կովկասի ցեղերի և տեղերի նկարագրության համար (= Սբորնիկ մատերիալով) ռուսերեն պարբերականի 28-րդ (1900) հատորում:

որպեսզի Բագրատունյաց հավակնությունը խելքի մոտ երևա, առանց խախտելու Սողոմոն Իմաստունից սերելու գաղափարը:

Սողոմոնի յոթն որդիները գալիս են Փղշտացվոց աշխարհից Եկլեց գավառը Ռաքայել թագուհու մոտ: Սա նախ մկրտել է տալիս նրանց և փոխում է երեքի անունները, մեկին անվանելով Մոշալե (Մուշեղ), մյուսին՝ Բագարատ, և երրորդին՝ Արգավար (Արգար): Սրանցից մեկին թագուհին իր դուստրը կնության է տալիս, մյուս երկուսին խնամեցնում է Հայոց թագավորների հետ: Յոթ եղբայրներից չորսը գնում են Վրաստան: Նրանցից Գուռամը դառնում է իշխան Վրաստանի, Սահակ մեկնում է Կախեթ, և Ասամ[1] ու Վարազվարդ գնում են Կամբեճան, սպանում պարսիկ զորավարին և տիրանում երկրին: Ահա այս Գուռամից է, որ սերում է Վրաց Բագրատունի տոհմը: Գուռամ կյուրապաղատ էր, նրան հաջորդեցին որդուց որդի հետևյալ անձերը.

1 Գուռամ Կյուրապաղատ
|
2 Ստեփան (եղբայր՝ Դիմիտրե)
|
3 Ատրներսեհ
|
4 Ստեփան II
|
5 Գուռամ II Կյուրապաղատ
|
6 Վարազ-Բակուր
|
7 Ներսեհ
|
9 Ատրներսեհ (եղբայրներ՝ Փիլիպպոս, Ստեփան)
|
6 Աշոտ Կյուրապաղատ (եղբայր՝ Գուռամ)

Այս շարքի մեջ միայն վերջին երեք անուններն են պատմական և Բագրատունի, ինչպես տեսանք վերև: Մյուսները հնարածո են և առնչություն չունին Բագրատունիների հետ: Միայն մի դեպք է հայտնի, երբ Եկեղյաց գավառը երևան է գալիս նրանց պատմության մեջ: Այս մասին պարագայորեն խոսել ենք այլուր[2]: Այստեղ բավ է հիշել, որ X դարու սկզբում Տարոնում իշխում էր Գրիգոր, կամ ինչպես բյուզանդացիք են անվանում Գրիգորիկ, Բագրատունի իշխանը: Կարող և քաղաքականապես ազդեցիկ մի դեմք էր: Լևոն (886-912) և Ռոմանոս Լեկապենոս (920-945) կայսրերը աշխատում էին թուլացնել նրա արաբական կապերը և ծառայացնել կայսրության շահերին: Գրիգոր ընդունեց, երկար տատանումից հետո, կայսերական հրավերը և գնաց մայրաքաղաք: Լևոն կայսրը ամեն ուշադրություն

[1] Ասամ, թերևս Արշամ անունն է, կամ Սամ:

[2] «Les Taronites en Arménie et à Byzance», «Byzantion», t. IX, 1934.

ցույց տվեց, մագիստրոսության մեծ պատվի հետ թոշակ կապեց և մի ապարանք շնորհեց մայրաքաղաքում: Ռոմանոս կայսրի օրով Գրիգոր ցանկություն հայտնեց ապարանքի փոխարեն ստանալ մի կալված Եկեղյաց գավառում: Գրիգոր ստացավ *τὸ προάστειον τοῦ Γρηγορᾶ ἐν Κελτζηνῇ,* այսինքն՝ Գրիգորասի կալվածը Եկեղյաց գավառում:

Գրիգորի հաջորդ և որդի Բագարատը ևս այցելեց մայրաքաղաքը, պատրիկության պատվի արժանացավ և կնության առավ Թեոփիլակտոս բարձրաստիճան պալատականի դուստրը: Այս առթիվ Բագարատ խնդրեց հաստատել իր վերա հիշյալ կալվածը, որ Գրիգորի մահից հետո վեճի նյութ էր դարձել իր և իր եղբորորդիների մեջ: Գրիգորի բացատրությամբ, կալվածն անհրաժեշտ էր որպեսզի արաբական արշավանքների ժամանակ, որոնց ենթակա էր Տարոնը, կարելի լինի այնտեղ ապաստանել: Բագարատը մի հավելյալ հիմ ևս ուներ պնդելու նույն կալվածի վերա, որպես մի ապահով տեղի իր կնոջ, բյուզանդական այդ իշխանուհու համար:

Այս կերպով Տարոնի Բագրատունիները ոտ դրին Եկեղյաց գավառում: Հետևանքը հայտնի չէ: Ուրիշ շոշափման կետ չեն ունեցել նրանք այս գավառի հետ:

Այդ յոթ եղբայրների Եկլեց գալը, եթե միայն ունայն երևակայության պտուղ չէ, այլ խուլ արձագանք որևէ իրողության, այդ իրողությունը կարող է լինել միմիայն հիշյալ դեպքը, մանավանդ որ, մյուս ավանդության մեջ, Ատրներսեհ Կույրի երեք եղբորորդիք տարոնցի էին: Այս պարագային մեր զրույցը պետք է հորինված լինի ուշ, քան Լեկապենոսի ժամանակը և այնքան ուշ որ իրողությունն աղոտանար հիշողության մեջ և տեղափոխվեր մոտիկ անցյալից հին դարերը:

Հնության նշան չէ բնավ ևս այն, որ յոթ եղբայրներից երեքը գնում են Կախեթ և Կամբեճան: Կախեթի իշխանները, որ քորեպիսկոպոս էին կոչվում հայտնի են հանվանե IX դարից մինչև XI: Նրանք Բագրատունի ծագում չունեին: Բագրատունիք կոխեցին Կախեթի և Հերեթի հողը և նվաճեցին Բագարատ III և IV թագավորների օրով XI դարի առաջին կեսում[1]: Զրույցը նպատակ ունի հաստատելու թե Բագրատունիք հնուց ժառանգական իրավունք ունեն հիշյալ երկրների վրա:

Հայ Բագրատունիների նախահայրերն իրենց Մուշալե, Բագարատ և Աբգավար անուններով այլ բան չեն հաստատում, քան հեղինակի կատարյալ անգիտությունը: Աբգավար, աղճատումն Աբգարի, ծանոթ է նրան անտարակույս Խորենացուց: Մուշալե, հունական ձևն է Մուշեղի, *Μωσαλέ,* որ Մամիկոնյան անուն է և հայտնի է հեղինակին երևի *Διήγησις* գրվածքի վրացերեն թարգմանությունից: Մեծ հնարագիտություն չկա Բագրատունի-

[1]**Brosset,** I, էջ 299 և 317-318:

ների նախահոր Բագարատ անվանելուն մեջ: Զարմանալի է, որ Վրաց Բագրատունիների նկատմամբ համապատասխան անունով նախահայր չէ նշանակել և ոչ էլ բացատրել, թե ինչո՞ւ Գուռամի սերունդը պիտի Բագրատունի անունը կրեր: Թագավորազն Վախթանգ նկատել է այս բացը և փորձել է լրացնել իր անձնական ենթադրությամբ, ինչպես կտեսնենք ստորև:

Այսպես, թե այնպես Բագրատունիների նախահայրը Գուռամն է, հրեա Սողոմոնի որդին: Կեղծիքը կանգ չէ առել: Լավ չէ՞ր լինի, որ Գուռամ մի կերպ ազգակից, արենակից լիներ նաև մեծ թագավոր Վախթանգին: Հարկավ ցանկալի էր ազգային զգացումի տեսակետից: Գայթակղիչ միտքը իրականացել է: Գտել են, որ Գուռամ հրեա էր միայն հոր կողմից, իսկ մոր գծով բուն վրացի էր, լինելով Վախթանգի դստեր որդի, այսինքն՝ աղջկաթոռը: Հետևապես Սողոմոն հրեան ամուսնացած է եղել Վախթանգի դստեր հետ: Սակայն Սողոմոնը չէր եկել Փղշտացվոց աշխարհից Վրաստան, այլ միմիայն իր յոթ որդիք: Կեղծարարի փույթը չէ: Այս գյուտն անելուց հետո, բնական է, որ Գուռամ իշխած լիներ Վախթանգի հաջորդների կարգին: Արդարև նա հաջորդ է նշանակված Բակուր III-ի, որ Վախթանգի թոռան թոռնորդին էր, այսինքն՝ հինգերորդ սերունդը: Գուռամի միջամտությունը խանգարում է Վախթանգի հաջորդների կարգը և շփոթություն է ծագում սրանց և Գուռամի սերունդի հաջորդականության մեջ, ինչպես կտեսնվի հետևյալ աղյուսակից:



Ութերորդ և իններորդ անունները, Ատրներսեհ և Ստեփան գտնվում են թե՛ մեկ, թե՛ մյուս գծի վրա: Ո՞րն է ճիշտը: Ատրներսեհ Բակուր III-ի որդի՞ն է, թե Ստեփանի: Ուրիշ խոսքով, ո՞վ ումնից է առել: Վախթանգի սերնդաբանության հեղինակը Լեոնտիոս եպիսկոպոսն է, մյուսինը՝ Սմբատ Դավթյան: Տարաբախտաբար սրանց հարաբերական հնությունը հայտնի չէ ստուգորեն: Լեոնտիոսի գործի հայ թարգմանության մեջ Գուռամ չի հիշվում: Ստեփան ընկնում է Թիֆլիսի պաշարման ժամանակ: Իսկ Ատրներսեհի մասին ասված է «յազգէ Դաչէի», ուրեմն որդի Բակուր III-ի (որ ևս չի հիշվում, երևի մոռացված է): Յոհան և Ջևանշեր իշխանների նայող հատվածի մեջ ևս Ատրներսեհ և Ստեփան չեն հիշատակված Գուռամի գծի վերա. և Վարազբակուրը համարվում է Ստեփան I-ի որդին: Այս երկու պարագաները հիմ են տալիս կարծելու, որ վիճելի անունները առաջին գծից են անցել երկրորդը: Վախթանգյան Ատրներսեհին և Ստեփանին զուգակշռում են խսկապես Գուռամյան Գուռամ II և Վարազբակուր, և հետևյալ երեք աններին, Միհրին, Արչիլին և Ջևանշերին՝ Գուռամյան Ներսեհ, Ատրներսեհ և Աշոտ Կյուրապաղատ. Ատրներսեհ և Ստեփան անցել են Գուռամի գիծը և Ներսեհ, Ատրներսեհ և Աշոտ գրավել են Միհրի, Արչիլի և Ջևանշերի տեղերը:

Այս կետում Սմբատ Դավթյանի և Լեոնտիոս եպիսկոպոսի մեջ ներքին մի կապ կա: Եվ կապը նշմարվում է նաև այլուր: Լեոնտիոս հաշվում է Աղերկ իշխանից մինչև Գուռամ I երեսուն իշխան: Աղերկ Փառնավազի 10-րդ հաջորդն է, իսկ Գուռամ 39-րդ: Աղերկ ապրում էր Քրիստոսի ծննդյան տարիներին: Արդ Սմբատ Դավթյանի հաշվով, Սողոմոն հրեան 29-րդ սերունդ կամ ծունկ էր աստվածահոր Հովսեփից և սրա եղբոր Կլեոպից սկսած, Գուռամ I, ուրեմն 30-րդ սերունդը: Այս զուգադիպությունը դիպվածական լինել չի կարող, մեկը ձևած է մյուսի վերա: Եթե ամեն մի ծունկ համարենք քսան տարի կստանանք Քրիստոսի ծննդից մինչև Գուռամ 600 տարի և որովհետև Լեոնտիոս տալիս է նրան 25 տարի իշխանություն, ուրեմն Գուռամ իշխել է 575-600 թթ.: Այս է Լեոնտիոսի կեղծ ժամանակագրության բանալին: Երեսուն ծունկերի մերձավոր վեցհարյուր տարին բաժանել է երեսուն առասպելական թագավորների մեջ, տալով ամեն մեկին կամայական մի թիվ, մեծ մասամբ տասնևհինգական տարի, ավելի երկար իշխանություն վերապահելով քանի մի նշանավոր անձերի:

Լեոնտիոսի երեսուն թագավորները և Սմբատ Դավթյանի նույնաչափ թվով հրեա ծունկերը մինչև Գուռամ ելած են միևնույն մտավոր գործարանից: Ակամայից կասկած է ծագում, արդյո՞ք Սմբատ Դավթյանը մի ուրիշ կեղծանուն չէ նույն հնարագետ Լեոնտիոս եպիսկոպոսի, ինչպես էր Ջևանշեր Ջևանշերյանը:

Գուռամ պատմական դեմք չէ, այլ երևակայության ծնունդ, իսկ նրա

Բագրատունի ծագումը հերյուրված է այնպիսի անարվեստ կերպով, որ կեղծարարն անտեսել է, թե ինչո՞ւ Գուռամի սերունդը Բագրատունի է կոչվում: Այս անպատեհ լռությունը շփոթել է Վախուշտին և սա պատրաստ է լրացնել պակասը, իր կողմից նոր դեմքեր ստեղծելով: Հավանական է համարվում, որ Գուռամ Կյուրապաղատը չէր Վախթանգի փեսան, այլ իր պապը, որ, երևի, նույնպես Գուռամ էր կոչվում և որի որդին էր Բագարատ: Գուռամ Կյուրապաղատը լինելով այս Բագարատի որդին կրել է հոր անունը և ավանդել իր տոհմին:

Սողոմոն իրեայի զրույցը նմանություն է Խորենացու հիմնովին սխալ տեսության, թե Բագրատունիները իրեական սերում ունին: Զրույցը հորինված է ոչ առաջ, քան XI դար: Յոթ եղբայրներից երեքը, որ Հայք են գնում, ներկայացնում են Բագրատունի երեք ճյուղը Հայաստանում, Անի, Կարս և Տաշիրք (Կյուրիկյան): X դարու երկրորդ կեսին երևան եկան Կարսի և Տաշիրքի Բագրատունիք: Իսկ Վրաստան ուղղված չորս եղբայրները արձագանք են նույն տոհմի չորս ճյուղավորման, որ վերաբերում է XI դարու սկիզբներին:

Պատմության համար միակ արժեքավոր նյութ մնում է այսպիսով միմիայն Ատրներսեհ Կույրի ավանդությունը: Ստույգ արտացոլք է պատմական իրողության, Ատրներսեհ Կույրը անդրադարձումն է Աշոտ Կույրի, և Կույրի որդին (և ո՛չ եղբորորդի) Ատրներսեհը ինքը Վասակն է: Ինչո՞ւ Աշոտ և Վասակ անունները տեղի են տվել Ատրներսեհի: Կույր դիպվածո՞վ թե որևէ հիմ կա: Վասակի Վրաստան քաշվելու միջոցին այնտեղ իշխում էր Ատրներսեհ անունով մի իշխան և որի որդին կոչվում էր Ներսեհ: Սա մի արաբ ծառա ուներ, որ քրիստոնեություն էր ընդունել և մեռավ մարտիրոսական մահով հունվարի 7-ին 786 թվին: Անունը Աբո էր, որի հիշատակը ցայժմ տոնում է վրաց եկեղեցին[1]: Ինչպես տեսանք ուղիղ նույն օրը նահատակվեցին և Արծրունի երկու եղբայրները ու նաև վրաց մի իշխան: Արդյո՞ք Արչիլն էր այս իշխանը, թե Աբո, խնդիր չէ: Հնարավոր է, որ երկուսն էլ նահատակված լինեն միաժամանակ: Արչիլ թերևս իշխում էր Վրաստանի մի մասի վերա, իսկ Ատրներսեհ՝ մի ուրիշ մասի: Եթե անգամ հավատանք, որ Ատրներսեհ Կույրի որդուն ընդունողն Արչիլն էր, ներելի է մտածել, որ ժամանակակից վրաց Ատրներսեհ իշխանի և իր որդու Ներսեհի անունները կաոչել են Աշոտի և Վասակի վերա, ձուլելով այսպես այս անձերը:

Ուշադրության արժանի է նաև Վասակ-Ատրներսեհի դստեր անունը, Լատավրե: Ի՞նչ է նշանակում այս խորթ անունը: Որքան մեզ հայտնի է որևէ մեկնություն չէ առաջարկված, ուստի ավելորդ չենք համարում, հարկ եղած վերապահությամբ, հայտնել մի ենթադրություն:

[1] **Brosset,** I, էջ 262:

Հայ-պարթև **հրապարակ** բառը դարձել է վրացերենում **լապարակի**, այսինքն **հր** փոխվել է լ-ի: Հետևապես Լատավրե կարող է կշռել հայ-պարթև **Հրատավրի**, ուր առաջին մասը սղումն է Հրահատ անվան, որ ավելի սեղմ Ռատ ձևով ընդունված էր Օրբելյան տոհմի մեջ[1]: Այդպես էր կոչվում Լիպարիտի որդին: Կեդրինոսի մոտ Ռատ դարձել է *Ὀράτιρ* անշուշտ, Հորացիոս անվան ազդեցության տակ: Հրահատ Կամսարականի անունը Պրոկոպիոս տառադարձրել է *Ἀράτιος*[2] Հրատ-ավրի երկրորդ մասը այլ բան չէ, քան հայ-պարթև -**ուհրի**: Հայ թարգմանության մեջ կարդացվում է Լատորի: Այսպիսով կստանանք Հրատուհրի, այսինքն՝ Հրահատուհրի (հետագայում Հրահատուհի) իշխանական անունը:

Ստուգաբանությանս նպաստավոր է նաև այն պարագան, որ Վասակի եղբայր Սմբատ ամուսնացած էր Հրահատ Մամիկոնյանի թոռան հետ, դուստր Մուշեղի և քույր Սամուելի, որ ընկավ 775 թվի կռվին: Սմբատի կինը կարող էր կոչված լինել իր պապի անունով Հրահատուհրի, կամ Հրատուհրի, ինչպես սովորություն էր: Նույն անունը կարող էր անցնել և Վասակի ընտանիքին, նախարարական միջավայրում տիրական սովորույթի համաձայն:

Հրեա Սողոմոնի երկրորդ որդին Սպանդիատ ևս համարվում է Բագրատունիների նախահայր: Սպանդիատ հրեական անուն չէ և իր կրողը չէ կարող հրեական ծագում ունենալ և Հրեաստանից եկած լինել Վրաստան: Անտարակույս մի շփոթություն կա այս ավանդության մեջ: Դավիթ մարգարեն Աբիտալա (մեր թարգմանության մեջ Ամիտալա) կնոջից մի որդի ուներ Սափատիա անունով: Մարկվարտ կարծում է, որ վրացիք Սափատիա անվան մեջ տեսել են Սպանդիատ և հերյուրել սրա նախահայր լինելու զրույցը: Սակայն Խորենացու մոտ Սպանդիատի մասին հիշատակություն չկա: Հրեական օրենքը թողնելուց հետո Բագրատունիները, մեր Հոր (3) ասելով, խժական անուններ էին կրում, ինչպես Բյուրատ, Տրդատ (և ո՛չ Սմբատ, ինչպես տպագրված է)[3]:

Առաջ նրանց սովորական անուններն էին՝ Բագադիա, Տուբիա, Սենեքիա, Ասուդ, Սափատիա, Վազարիա, Ենանոս: Ապա այն կարծիքն է հայտնում, որ այս անուններից մնացել են Բագադիա, Ասուդ, Վազարիա և Շամբաթ, այլափոխված՝ Բագարատ, Աշոտ, Վարազ և Սմբատ ձևով:

---

[1] Թալինի մի արձանագրությունից ծանոթ է **Հատ**., սղումն Հրահատի, **«Վիմական տարեգիր»**, էջ 2:

[2] **Կեդրենոս**, II, 572, **Պրոկոպիոս**, II, 59:

[3] Այս անունների մասին խոսում է Խորենացին Տրդատ Բագրատունի ոմն ցոփ իշխանի արարքի առթիվ հանդեպ Նազենիկ վարձակ կնոջ: Ահա այս Տրդատ անունն է խժական համարում նման Բյուրատի: Տպագրի Բյուրատ և Սմբատ պետք է ուղղել Բյուրատ և Տրդատ, ինչպես ունեն քանի մի ձեռագիրներ:

Սպանդիատ անունով Բագրատունի անծանոթ է Խորենացուն, ինչպես վրաց մատենագրության մեջ: Մի Սպանդիատ Բագրատունի է հիշվում անցյալում, 505 թվին ժողովի ժամանակ, և միմիայն: Այս միակ օրինակով Սպանդիատ չէր կարող Բագրատունի տոհմական անունների կարգն անցնել և նյութ տալ զրույցի:

Ավելի հավանական է կարծել, որ Սպանդիատ գործ չունի Դավթի հետ, այլ մի ավելի հին զրույցի բեկոր է նույն Բագրատունիների ծագման վերաբերյալ: Սպանդիատ միջին պարսիկ ձևն է Ավեստայի Սպենտադատա անվան, որ նշանակում է սրբատուր, ուր սուրբը ինքն Արամազդն է: Նույն անվան պարթև համազորն է Սպանդարատ: Իրանի մեծ հերոսներից մեկն է Սպանդիատ, Վշտասպի եղբայրը և որին սպանեց Ռուստամ: Այս հերոսն իր տեղն ունի Արշակունիների և անգամ Սասանյանների սերնդաբանության մեջ: Սպանդիատ կրում է Պահլավ մակդիրը, որով վկայում է իր հավակնությունը նախահայր լինելու Արշակունի տոհմին: Հայ Կամսարականների մեջ ընդունված է, Սպանդարատ անունը: Կամսարական տունը պահլավ ծագում ուներ և, թերևս, նրքա նույնպես արենակից էին համարվում Սպանդիատ հերոսին:

Արդ անսպասելի չէ, որ նախքան Խորենացու գայթակղիչ գյուտը, Բագրատունիները նախահայր ընտրած լինեին նշանավոր իրանական հերոսին, Սպանդիատին: Իշխանական տոհմերը՝ հայ, պարսիկ, անգամ արաբ, սնապարծ սովորություն ունեին, կեղծ ծննդաբանությամբ հանել իրենց ծագումը որևէ հինավուրց և ժողովրդական դյուցազնից: Բագարատ անունը հնագույն Բագադատա ձևով երևան է գալիս առաջին անգամ բուն Պարսկաստանում, այսինքն՝ Փարսիստանում, 220 թ. նախքան Քրիստոս: Փարսիստանը լինելով Աքեմենյան հարստության օրրան, հնուց վայելել է արտոնյալ վիճակ, և պահել հայտնի չափով ինքնավարություն ոչ միայն Աքեմենյան, այլև Պարթևական շրջանում: Առաջին իշխանը կոչվում էր Բագադատա, որտեղից պարթև Բագարատ ձևը: Սա ևս նշանակում է Բագա-տուր, ինչպես Սպանդիատ՝ սրբատուր, ուր **բագա** «աստված» նույն Արամազդն է: Դարեհ Նախշ-ի-Ռուստամի արձանագրության մեջ կոչում է Արամազդին **Բագա վազրակա,** «աստված մեծ»:

Բագրատունիների անունը շոշափման կետ ունի Սպանդիատի հետ և այս կարող էր թելադրել արենակցական վերջավորության համապատասխան զրույց:

Վրացի կյուրապաղատները գուցե և աղոտ հիշողություն ունեին Սպանդիատի նայող հին զրույցի և բնականորեն ձուլել են հին հերոսին Խորենացու առաջարկած նոր և հրապուրիչ Դավթի հետ և ստեղծել զույգ նախահայրեր: Բնական է հարց տալ, արդյո՞ք այս կարգի շշունջների դեմ չէ

ուղղված Անանունի այնքան վճռական ձայնը, թե Բագրատունիք սերում են Արամանյակի որդիներից: Ասել է, թե այս նշանավոր տոհմը օտարածին չէ, այլ բուն ազգային: Ափսոս որ Անանուն չէ բացատրում, թե ի՞նչ հիմ ուներ իր տեսակետը: Այս պակասը, հարկավ, պիտի դյուրացներ Խորենացու հերքումը, թեև Պատմահոր նոր կարծիքն ևս այլ հիմ չունի, քան ստուգաբանական սխալ մերձեցումներ:

Անանունի տեսությամբ, Արայի մահից հետո Հայաստան ընկավ Ասորեստանի իշխանության տակ մինչև Սենեքերիմի սպանությունը: Այս միջոցին հայերն ապստամբեցին և երկրի տեր դարձավ Արամանյակի որդիներից Զարեհ և ապա հաջորդաբար Արմոգ, Սարհանգ, Շավարշ և Փառնավազ: Վերջինս հնազանդվեց Նաբուգոդոնոսորին, և մնացին Բաբելացիների, հետո Մարաց և Մակեդոնացիների իշխանության տակ մինչև Պարթևաց երևալը: Երբ առաջին Արշակունի թագավորն եկավ Մծբին, նրան ընդառաջեց Բագարատ Փառազյան և պսակեց հայրենի թագով, տալով նաև իր դուստրը կնության:

Անտարակույս Ս. Գրքի ազդեցությամբ է, որ Անանունը հինգ թագավոր, թե իշխան է նշանակում Սենեքերիմից մինչև Նաբուգոդոնոսոր, որպիսի ժամանակամիջոցում հրեաները ունեցան նույնչափ թագավոր՝ Եզեկիա, Մանասե, Ամոն, Հովսիա և Հովակիմ:

Զարմանալի է, որ Բագարատ Փառազյան, որ ժամանակակից էր Նաբուգոդոնոսորի, ուրեմն ապրում էր յոթներորդ դարում նախքան Քրիստոս, տակավին կենդանի էր Արշակունի թագավորի Մծբին ժամանելու միջոցին, մոտավորապես երկրորդ դարի կեսերին: Անանուն չգիտե Արտաշեսյան կամ Տիգրանյան հարստությունը, կամ ավելի ճիշտ, ձուլել է Արշակունյաց հարստության հետ: Փառնավազի որդիք են Բագամ և Բագարատ. Բագարատի որդին Բյուրատ և սրա որդին Ասպատ: Բագարատի որդիք ժառանգեցին արևմտյան կողմում Անգեղ տուն. Բագարատը կոչեցավ և Անգեղ, որ է բարբարոսների աստված:

Չնայելով, որ Բագարատի որդիք սերում են Զարեհից, նրանք չեն կրում Զարեհի անունը: Բագարատը Փառազյան (այսինքն՝ Փառավազյան) է կոչված, բայց նրա որդիք, այսինքն՝ Բագրատունիք, որակված են որպես որդիք Բագարատի և ո՛չ Փառնավազի և ո՛չ էլ Զարեհի: Ակներև է, որ հեղինակի աչքում ևս Բագարատն է իսկապես նախահայր իր անունը կրող տան բյուրատ և ասպետ պատվանուններով, իսկ Բագարատ - Զարեհ գիծը արվեստական շենք է:

Մեզ հետաքրքրում է Փառնավազ անունը, բայց նրա արժեքը գնահատելու համար պետք է գաղափար ունենալ նաև մյուս անունների էության վերա:

Զարեհ որպես հայ անկախության հիմնադիր հիշեցնում է պատմական մի պատկառելի դեմք, Զարիադրեսը (այս անվան պարթևական ձևն է Զարեհ), որ հիմնեց Ծոփաց թագավորությունը այն ժամանակ, երբ իր զինակից Արտաքսիաս (Արտաշես) անկախ հռչակեց Արևելյան Հայաստան: Դեռ ևս չորրորդ դարում Ծոփաց մի իշխան կրում էր նույն Զարեհ անունը: Երկիրը չէր կորցրել խպառ անցյալի հիշողությունը:

Մյուս կողմից Զարեհ որպես ժամանակակից Սենեքերիմի, ուրեմն շատ ավելի հին դեմք, կարող է համեմատվել իրանական մի հռչակավոր հերոսի հետ, որ կոչվում էր Զարիադր: Սա Վշտասպի եղբայրն էր, ինչպես Սպանդիատը: Ալեքսանդր Մակեդոնացու պատմագիրներից մեկը[1] ավանդում է, որ Վշտասպը թագավորեց Մարաստան և ստորին երկիրների վերա, իսկ Զարիադր, որ կրտսեր եղբայրն էր, ուներ իր իշխանության տակ Կասպից պահակից վեր մինչև Տանայիս գետը (= Դոն գետը), ուրեմն Կովկասյան երկիրները:

Կարելի էր կարծել, որ Զարեհ այս երկու Զարիադրների, հեռավոր անցյալի այս երկու դեմքերի, միացյալ ստվերն է, որ մի հրաշքով հասել է մինչև Անանուն: Սակայն վերջինս մեծ վստահություն չէ ներշնչում, նրա հորիզոնը սահմանափակ է և կարողությունը այնքան հեռուները չէ գնում:

Ավելի հավանական է ընդունել Մարկվարտի հետ, թե Անանուն հանել է Զարեհ անունը Զարեհ - ավանից, որ գտնվում էր Բագրատունյաց կալվածում, Բագավանի մոտ: Այս վերջնից էլ հանել է Բագամ անունը: Շավաշ, կամ Շավարշ նույն կերպով կապված է Շավարշան-ի հետ[2]: Համամիտ չենք Մարկվարտին, թե Անգեղ տուն ասելով Անանուն հասկանում է Անգղ բերդը Ծաղկոտ գավառում: Անանուն գիտե Անգեղ տուն արևմուտքում, որ թյուրիմացության տեղիք չի տալիս: Ս. Գրքից նրան հայտնի է, որ Անգեղ անունով աստված կար բարբարոսների մոտ: Բագարատ համեմատելով բագին բառի հետ դժվար չէ նրան կռահել, որ Բագարատ անվան մեջ աստուծո գաղափար կա, ուստի և նույնանիշ է համարում Անգեղ և Բագարատ: Անգեղ տնից է, որ Բագարատ Փառազյան գնաց դիմավորելու Արշակունի թագավորին Մծբնում: Նկատենք անցողակի, որ Անանունի արտահայտությունից հետևում է, որ ինքն ապրում է Հայաստանի արևելյան մասում, հավանորեն Բագրատունյաց ոստանի, Դարոյնքի շրջանում: Բագրատունիք լքեցին Դարոյնք (այժմյան Բայազիտ) Աշոտ Մսակերի օրով († 826): Եթե ճիշտ է, որ Անանունի ստեղծած Զարեհ, Բագամ, Շավարշ

---

[1] **Քարես Միտիլենցի**, Fontes historiae religionis Persicae coll. **C. Clemen**, էջ 25:

[2] Շավարշ կրճատ ձևն է Շավարշունի, որ նշանակում է «սև արու ձի ունեցող», ինչպես Շավասպ նշանակում է «սև մատակ ձի ունեցող»

անունները կապ ունին Դարոյնքի շրջանի ավանների հետ, ինչպես ընդունում է Մարկվարտ, ապա ընդունելի չէ նրա կարծիքը, թե Անանուն ժամանակակից էր Բագարատին († 851)[1]: Անանուն առաջ է, քան Մսակեր, առաջ, քան Դարոյնքից տեղափոխվիլն Արշարունիք:

Ուշագրավ են մեր նյութի համար Արմոգ և Փառնավազ անունները: Սարհանգ, որ պարսկերեն հերոս է նշանակում, առանձին հետաքրքրություն չունի: Ուշագրավ է որովհետև Արմոգ եթե սրբագրվի Արտոգ կհիշեցնի Վրաց թագավորի անունը *Ἀρτώκης*: Այսպես էր կոչվում Տիգրան Մեծի ժամանակակից Վրաց թագավորը: Փառնավազ, հին ձևը Փառնաբազ, և Վրաց թագավոր էր Տիգրան Մեծի որդի Արտավազդի ժամանակ, *Φαρνάβαζος* որ նշանակում է փառաբազուկ: Արմող անունը կարելի է անտեսել, քանի որ հավաստի չէ, մանավանդ որ *Ἀρτώκης* ևս հաստատուն ընթերցուած չէ, այլ վիճելի է, *Ἀρτώκης* է՞, թե *Ἀρτάκης*: Կանգ առնենք Փառնավազի վերա:

Փավստոս միակ պատմագիրն է, որ ծանոթ է այս անվան. «զՓառաւազեանն հրաման տայր սպարապետն Մուշեղ հանել ի խաչ ի մէջ աշխարհին Վրաց»: Նա է դարձյալ, որ պահել է ինչ- ինչ հիշողություններ Տիգրան Մեծի մասին: Որտեղի՞ց է քաղել այդ հիշողությունները, հայտնի չէ: Հավանորեն միևնույն գրավոր, թե բանավոր աղբյուրից գիտե և Փառավազյան անունը: Թերևս մի ավելի հին Փառավազ է եղել, քան այն, որ ժամանակակից էր Արտավազդին և նա՛ է, որ տվել է իր անունը տոհմին:

Արտաշեսյան հարստությունը, Անանունի մոտ, ձուլված է հաջորդ Արշակունի տան հետ և համարված Արշակունի: Ավելի հին է կարծում նույն հեղինակը Բագրատունի տոհմը, որ թեև սերում է Արմանյակյան Զարեհից, բայց բուն նախահայրը Բագարատն է, որին անվանում է որդի Փառնավազի: Ի՞նչ է նշանակում այս արենակցությունը, եթե այս Փառնավազը Վրաց թագավորական տան անդամ է: Տիգրան Մեծ Ասորիքը նվաճելուց հետո փոխարքա կարգեց այնտեղ մի անձ, որ կոչվում էր Բագադատ, այսինքն՝ Բագարատ, որ հավանորեն Բագրատունիների նախահայրն է: Փառնաբազ Վրաց թագավորն էլ այդ ժամանակներն էր ապրում: Անանունի տրամադրած նյութերը այնպիսի որակի չեն, որ կարելի լինի ենթադրել նրա մոտ հեռավոր անցյալի մի հավատարիմ դրդանջ և Փառնավազի մեջ տեսնել հին Փառնաբազի պատկերը կամ կարծել, որ առաջին Բագարատն այդանուն հայր կարող էր ունեցած լինել: Անանունի Փառավազյանն իրապես այլ ոք չէ, քան Փավստոսի ծանոթ Վրաց թագավորական տունը և այստեղից գիտե նա այդ անունը: Իսկ թե ինչո՞ւ Փառավազին Բագարատի հայր լինելու

[1] «Caucasica», fasc, 2, 1930.

պատիվն է տված, պետք է կարծել, որ այս դեպքում ևս Անանուն, իր սովորության համեմատ, աշխարհագրական մերձավորությունը վեր է ածել ցեղականի: Հայտնի է, որ Սպեր գավառը Ճորոխի հովտում կազմում էր Բագրատունիների սեփականությունը, որով նրանք դրացի էին վրական հողերին: Հնագույն վրական իշխանական տունը հայ մատենագրության մեջ Փավստոսի հիշած Փառավազյանն է: Սպերը, վրական հողերի մի անկյունը, թարգմանվել է Անանունի մտքում որպես թե նրա տեր Բագարատը լիներ որդի նույն հողերի տեր Փառնավազի: Ուրիշ մեկնություն չենք գտնում, ինչպես չէ գտել և Մարկվարտ: Բախտախնդրություն կլիներ բառացի հասկանալ և արյան կապ որոնել Բագրատունիների և Փառավազյանների մեջ և կամ հետևցնել, թե Անանունին ծանոթ էր Բագրատունիների հաստատվելը Կղարջքում:

Անանունի առեղծվածը դեռ լուծված չէ, բայց նա այդքան ուշ հեղինակ չէ: Նրա հարցը կապված է Խորենացու խնդրի հետ: Պատմահայրը շատ բան է պարտական Անանունին: Սրա պարզ, բայց հանճարեղ մտքի սերմերն են, որ այնպես խնամքով հնձել է Խորենացին, հակառակ իր արհամարհական վերաբերումին:

Անանուն գիտակցորեն շեշտում է Բագրատունիների Հայկյան ծագումը և զգուշությամբ հակադրում Մամիկոնյանների օտարածին ծագման, «քանզի ոչ են սոքա որդիք ազգածնինն Արամանեկայ, այլ են եկեալ ի Ճենաստանէ»: Ինչ որ Անանուն պատմում է Մամիկ, Կոնակ և Ճենբակուրի մասին պատմական երաշխիք չունի: Մամիկոնյան տան ճենական ծագումի լուրը գիտե նա Փավստոսից: Մամիկ և Կոնակ անունները հանած են **Մամ-*ի*-կոն** անվան ընդգծված մասերից: Մամիկոնյանների նախահայր եղբայրները որպես թե եկած են Հայաստան Խոսրով Հայոց թագավորի և Արտավան Պարթևի ժամանակ: Անանուն որպես թե առիթ է ունեցել խոսելու այս մասին Խոսրով արքայի մոտ եկած ճենական մի պատգամավորի հետ: Եթե այս Խոսրովը Պարսից թագավոր հռչակավոր Ապրվեզն է, Անանուն պետք է VII դարու հեղինակ համարվի:

Փավստոս հիշում է Մամիկոնյանների ճենական ծագումը նրանց գովելու, պանծացնելու նպատակով: Լինելով ճենական թագավորի ցեղից նրանք ոչնչով պակաս չեն Արշակունիներից: Մինչդեռ Անանունի աչքում օտարածին Մամիկոնյանն այնքան վստահելի չէ, որքան ազգածին Բագրատունին: Վեցերորդ դարու վերջերին ծագած ապստամբական շարժումները, որոնց առաջնորդները Վարդան և Մուշեղ Մամիկոնյաններն էին, հաճելի չեն Անանունին: Այդ խռովությունները իրենց աղետաբեր հետևանքներով հակապատկեր են Սմբատ Բագրատունու պարսկական հաշտ քաղաքականության միջոցով ստեղծած խաղաղ վիճակին: Կարելի էր

հավատալ, որ Անանուն իրոք Սմբատի և իր հովանավոր Խոսրով Ապրվեզի ժամանակակից գրիչ է:

Սակայն կան երևույթներ, որոնք չեն արդարացնում այս եզրակացությունը: Բավական է հիշել Բյուրատ և Ծենբակուր անունները: Բյուրատ անունը երևան է գալիս առաջին անգամ ութերորդ դարի սկզբներին: Առողիկ մի անծանոթ աղբյուրից հայտնում է, որ բյուրատյան էր կոչվում Սմբատ Կյուրապաղատ, այն իշխանն, որ Կաղանկատվացու վկայությամբ մեռավ 727 թվին: Անանուն և նրա հետևությամբ Խորենացին ըմբռնել են բյուրատյան որպես որդի Բյուրատի և վերջինս դարձել է նրանց մոտ հատուկ անուն: Զարմանալի է, որ վրացիք պահել են Բիվրիտիան, այսինքն՝ Բյուրատյան ձևը, թեև Խորենացուց գիտեն այդ անունը[1]: Խնդիրը մնում է բաց, թե Սմբատ Կյուրապաղատ ինքն էր վաստակել Բյուրատյան տիտղոսը, թե ժառանգել էր իր հորից, ուրեմն ենթադրելով, որ հայրը կոչվել է Բյուրատ: Սմբատի հայրը Վարազտիրոցն էր և ոչ Սմբատ, ինչպես սխալմամբ նշանակում է Հովհաննես Կաթողիկոսը: Այս Վարազտիրոցի մասին ուրիշ բան չէ հայտնի, քան այն, որ սպանվել է հոռոմների կողմից և հետևապես անկարելի է որոշել, թե ի՞նչ գործերի համար պետք է տիտղոս ստանար: Գիտենք, որ Սմբատ Գուրգան - մարզպան արժանացավ Խոսրով-Շում պատվավոր տիտղոսի, որ նշանակում է Խոսրովի ուրախություն: Նրա որդին Վարազտիրոց ստացավ նույն Պարսից թագավորից ավելի շողշողուն կոչում, որպիսին է Ջավիտյան-Խոսրով, «հավիտյան-Խոսրով»: Վարազտիրոցի որդին Սմբատ ևս կարժանանար նման պատվի, եթե չխորտակվեր Պարսից պետությունը: Սմբատ սկզբում գտնվում էր կայսերական ծառայության մեջ և կարգվեց դրունգար, ապա բռնեց Թեոդորոս Ռշտունու տեղը, հետո Գրիգոր Մամիկոնյանի հետ պատանդ գնաց արաբների մոտ և վերադարձավ 662 թվին: Սրա որդին էր Վարազտիրոց «զոր սպանին Հոռոմք», Սմբատ Բյուրատյանի հայրը[2]:

Անանուն և Խորենացի Բյուրատյան հասկացել են որպես որդի Բյուրատի: Վերջինիս մոտ Սմբատ Բագրատունին որդի է «Բիւրատայ Բագրատունւոյ»: Եթե այսպես հասկացվի, պետք է ընդունել, որ Սմբատ Բյուրատյանի հայրը՝ Վարազտիրոց կոչվել է Բյուրատ: Նրա բռնի մահը թերևս

---

[1] **Brosset**, I, 66, Սմբատ **Բիվրիտիան** սպանեց Երվանդին և հաստատեց Արտաշանին գահի վերա: Վրացին ծանոթ է Խորենացուն, որտեղից քաղում է այս տեղեկությունը, միայն ուշագրավ է, որ խուսափում է Սմբատին, որ Բյուրատ Բագրատունու որդին է, անվանել Բագրատունի, այլ որակում է **Բիւրատեան** անունով: Նպատակն է չհակասել ինքն իրեն Բագրատունիների ծագման խնդրում: Մի ուրիշ տեղ, էջ 163, Վախթանգի բերանով ասում է. «Դուք, Հայերդ, Արշակունիք, **Բիվրիտյան** բդեշխներ, մոռացե՞լ եք Գրեգոլ Պարթևին»: Վախթանգի մեծամեծներից մեկը, Օձխրեի տերը ոմն **Բիվրիտիան** է, էջ 183, 200:

[2] Այս ծննդաբանությունը հետևում է **Սեբեոսի** և **Ղևոնդի** վկայություններից:

ապացույց համարվի, որ նա արիական ելնել է ունեցել կայսերության դեմ, քաջագործություններ գործել և կոչվել բյուրատ:

Բյուրատյան հիշեցնում է արտաքուստ ջավիտյան, բայց իմաստ չունի պարսկերեն: Հավանական է, որ բյուրատ կազմուած է բյուր և հատանել բառերից փոխան լրիվ բյուրահատ, ինչպես կա փայտատ փոխան փայտահատ, և կնշանակե բյուր մարդ կոտորող, շատ հաղթությունների տեր անձ: Պատշաճում է նման վիպական մակդիր մանավանդ Սմբատ Խոսրով-Շումին, որի անօրինակ ուժը և կարող զենքը փառաբանել է Սեբեոս. «Եւ էր սա այր անհեթեթ անձամբ եւ գեղեցիկ տեսլեամբ եւ բարձր եւ լայն հասակաւ եւ բուռն եւ ցամաք մարմնով»: Հայտնի է, թե մարմնական ուժի և բարոյական անվեհերության ողջիսի հրաշքներ կատարեց բյուզանդական մայրաքաղաքում կրկեսի մեջ վայրի գազանների դեմ կռվելիս, ապշություն և հիացում պատճառելով հանդիսականներին: Պակաս նշանավոր չէր նրա քաջարի մենամարտը Հեփթաղաց թագավորի հետ, որին նիզակի կուռ հարվածով գետին տապալեց[1]: Տարիներ շարունակ ճակատեց պետության հյուսիս-արևելյան սահմանագլխում քուշան և հեփթաղ հրոսակների դեմ և միշտ հաղթական եղավ: Ահա մի կյանք, որ իրական վեպ է: Մ. Չամչյան անվանել է նրան Բազմահաղթ: Նույն իրավամբ հները կարող են կոչել Բյուրատ այն իմաստով ինչ որ մեկնեցինք: Նույն անունը կարող էին կրել և իր ժառանգորդները և մանավանդ վերջին ծանոթ շառավիղը Սմբատ Կյուրապաղատ: Այս բոլորը, հարկավ, որպես սոսկ ենթադրություն, չեն կարող մրցել հաստատուն փաստի հետ, որ Բյուրատյան անունը հայտնի է միայն Սմբատ Կյուրապաղատի անվան կից: Այս փաստը հարկադրում է ընդունել, որ Անանուն այստեղից գիտե Բյուրատ անունը և ապա ուրեմն ուշ է, քան Սմբատ Բյուրատյանի մահը 727 թ.:

Ծենբակուր անունն ևս նպաստավոր չէ Անանունի հնության: Առաջին անգամ հանդիպում ենք Ծենբակուր անունը Ղևոնդի մոտ: Վալիդի օրով (705-715) Մահմետ զորավարը արշավեց Ծենաց աշխարհի վերա և պահանջեց 35 հազար աղջիկ: Ծենաց թագավորը կոչվում էր Ծենբակուր: Աղջիկների փոխարեն ղրկեց նույնչափ ծպտյալ զինվոր, և ամբարտավան զորավարը պարտություն կրեց և նահանջեց: Խորենացու անունով հասած Աշխարհագրությունը ևս հիշում է «արքայն Ծենբակուր» Ծենաց աշխարհի նկարագրության մեջ[2]: Բայց այս երկը Ղևոնդից հին չէ: Եթե Անանուն Ղևոն-

[1] **Սեբեոս,** էջ 107 (Թիֆլիս, 1912) ասում է այս երկու ախոյանների մասին. «զի արք սկայազաւրք (եւ ո՛չ սակաւազաւրք, ինչպես տպուած է) էին երկոքինն եւ կուռ սպառազինեալք»:

[2] Մարկվարտի բացատրությամբ Բակուր կազմված է **բագ** և **ֆուր** բառերից, որ նշանակում է «աստուծոյ որդի» և թարգմանություն Չինաց թագավորի տիտղոսի:

դից գիտե նենքակուր անունը, նա չէ կարող ութերորդ դարու վերջերից հառաջ լինել: Առավելն կարող էր նույն դարու մարդ լինել և Ղևոնդի հետ մի ընդհանուր աղբյուրից ծանոթ լինել նույն անվան: Անանունի փոքրիկ, անշուք, բայց նորաշունչ գրվածքը ոգով և գաղափարաբանությամբ համապատասխանում է ութերորդ դարու կեսերից սկսված քաղաքական շարժման հիմը կազմող ակնկալությանց, այն շրջանին, երբ ոգեշունչ մոնոզոնները գոչում էին, թե «ահա մերձեալ է ժամանակ փրկութեան ձերոյ, զի այժմ ընդհուպ դարձցի գաւազան թագաւորութեանն միւս անգամ ի տուն Թորգոմայ»: Անանուն հասկացնում է, որ գավազանի իրավունքը պատշաճում է ազգածին Բագրատունիներին, քան օտարազգի Մամիկոնյաններին: Ոչ միայն իր այս գաղափարով, այլև ժամանակով թվում է, թե հեռու չէ Խորենացուց:

Անանունի մոտ Բագրատունի տոհմը ներկայացնում է Արամանյակի, այսինքն՝ Հայոց ազգը և Փառնավազյանները՝ վրաց ազգը: Բագարատի և Փառնավազի արենակցությունն այլ բան չէ նշանակում, քան որ երկու ազգերը եղբայրակից են և համերաշխ քաղաքական ազատության ճանապարհի վերա, և գործակից արաբական լուծը թոթափելու ջանքերի մեջ:

Այսպես, ո՛չ Անանունի ծննդաբանությունն և ո՛չ վրական ավանդությունները, որոնք բացառապես գրական հողի վերա են զարգացած, ո՛չ մի արժեք չունեն Բագրատունիների ծագման խնդրում: Միակ ճշմարիտ տեղեկությունն է, ինչ որ պահված է Վարդանի մոտ, այսինքն՝ որ վրաց Բագրատունիք ծագում են հայ Բագրատունիներից և նրանց նախահայրն է Վասակ որդի Աշոտի: Վասակի որդին էր Աշոտ, որ խելացի քաղաքականությամբ կարողացավ շահել արաբական իշխանության վստահությունը և Վրաստանի իշխան կարգվեց: Այս հաջողության անմասն չէր անտարակույս այն վարկը, որ Բագրատունիք ձեռք էին բերել Հայաստանում: Լևոն V Հայկազն կայսրը շնորհեց Աշոտին կյուրապաղատության պատիվ, անշուշտ, հակակշռելու համար արաբական ազդեցությունը: Աշոտ ստանձնելով Վրաստանի իշխանությունը, սկիզբը դրեց նրա քաղաքական վերածնության, եղավ Վրաստանի համար այն, ինչ որ Աշոտ Մսակեր Հայաստանի համար: Երկու Աշոտների սերունդը գրեթե միաժամանակ թագ կապեց: Տեսանք, ինչպես Մսակերի թոռը Աշոտ թագավորեց 885 թվին: Աշոտ Կյուրապաղատի թոռնորդին Ատրներսեհ նույն պատվին հասավ 899 թվին:

Ինչպես հիշեցինք վերև, երբ Ջահապ արաբ իշխանը գրավեց Դվինը, Աշոտ Մսակերի ժամանակ, Աշոտ Կյուրապաղատը դիմեց Լևոն կայսրին և խնդրեց օգնել նրան ազատելու Դվինը: Բայց Լևոնի վերահաս մահը Միքայելի ձեռքով Աշոտի խնդիրը անկատար թողեց: Պետք է կարծել, որ Աշոտ Կյուրապաղատը իշխան ճանաչվեց արաբների կողմից Աշոտ Մսակերի

հետ միաժամանակ: Կարճ միջոցում խոհուն գործունեությամբ կարողացավ «տիրել ի Կաղրջաց մինչեւ ի Տփղիս լեռնակողմամբ հանդերձ»[1]:

«Վրաց տարեգիրք»-ը համաձայն է այս կետում, երբ վկայում է, որ Աշոտ նվաճեց Կղարջեթից մինչև Քասն գետը: Նվաճումը, ըստ «Տարեգիրք»-ի, հետևանք էր այն հաղթության, որ Աշոտ տարավ Թիփլիսի արաբ ամիրայի վրա:

Արդարև այդ ժամանակները Թիփլիսը գտնվում էր Մուհամատ իբն Հատաբ արաբ ամիրայի ձեռքին: Հյուսիսից Աշոտ Կյուրապաղատին հարևան էր Ափխազաց թագավորությունը: Ափխազները օգտվելով Բյուզանդիայի և խազարների մրցությունից հաջողել էին արդեն հիմնել նոր իշխանական հարստություն և բավականին ընդարձակել իրենց տերության սահմանները, որոնց մեջ մտնում էին ոչ միայն բուն Ափխազիան, այլև Մինգրելիան և Գուրիան՝ գրեթե ամբողջ ծովափնյա աղեղը:

Աշոտի կողմից պարզ հաշիվ էր բարեկամական հարաբերություն ստեղծել այս հարևանի հետ, որ հակառակ դեպքում կարող էր ահավոր լինել: Աշոտ Կյուրապաղատը բարի համարեց Ափխազաց Թեոդաս թագավորին փեսայացնել իր դստեր: Այս կերպ կարողացավ իրեն զինակից անել Թեոդասին և միասին դեմ դնել Թիֆլիսի ամիրային:

«Տարեգիրք»-ը հավատացնում է, որ կյուրապաղատը Քասն գետի մոտ ճակատեց ամիրային, որին օգնական էր Կախեթի իշխանը, և հաղթեց: Շուտով Աշոտի վրա եկավ Խալիդ՝ Եզիդի որդին, և Աշոտ փախավ իր ընտանիքով դեպի Հունաստան: Ջավախքի լեռներում, Փարվան լճի ափին հանգստանում էր, երբ հարձակվեցին նրա վրա արաբները, բայց Աշոտ հետ մղեց նրանց և գնաց Կղարջք և հաստատվեց Արտանուջ: Վերանորոգեց հին ավեր բերդը, շինեց Ս. Պետրոս և Ս. Պողոս առաքելոց անունով մի եկեղեցի, ջանաց երկիրը շենցնել, խմբել բնակչությանը, որ տակավին Մրվանի գործած ավերածության ծանր հետևանքների տակ էր գտնվում: Քիչ հետո նենգությամբ սպանվեց 826 թվին, հունվարի 29-ին:

Այս պատմության մեջ ճշմարտությունն այն է, որ Աշոտ Կյուրապաղատը Ջավախքից հետզհետե առաջ է գնացել և հաստատվել Արտանուջում, և չի կարողացել շարժվել դեպի Վրաստան, դիմադրության հանդիպելով Թիփլիսի ամիրայի և Կախեթի իշխանների կողմից: Խալիլ, որդի Եզիդի, սխալ ընթերցումն է, փոխանակ Խալիդի (վրացերեն լ և դ տառերը շփոթելի են), որ մեզ հայտնի Շայբանի իշխանն է, կուսակալ Հայաստանի 827-832 տարիները: Որովհետև Աշոտ Կյուրապաղատի մահը «Տարեգիրք»-ը դնում է 826 թվին, ուստի սխալ է գործում Խալիդ Շայբանի կուսակալին

[1] **Վարդան**, էջ 78:

Աշոտի դեմ հանելով: «Տարեգիրք»-ի օրինակներից մեկում չի հիշվում այստեղ Խալիդը հանվանե: Հավանական է, որ և այս ընդհարումը նույն Մուհամմադ իբն Հատաբի հետ է եղած: Կամ պետք է ընդունել, որ Աշոտի մահվան տարին սխալ է, ինչպես Մարկվարտն է ընդունում, որ քիչ հավանական է:

Խալիդ ընկճեց Թիփլիսի ամիրային և նրա տեղ նշանակեց Ալի՝ որդի Շուաբի, ինչպես վկայում են «Տարեգիրք»-ը և արաբ աղբյուրները: Ալի եղբայր էր Իսմայելի, որ Հատաբից առաջ նույն քաղաքի տերն էր: Ալիից հետո հաջորդեց Իսմայելի որդի Իսահակը:

Կյուրապաղատի որդիները մանկահասակ էին, երբ ինքը մեռավ: Երեց որդին կոչվում էր Ատրներսեհ (վրացերեն Ադարնասե), կրտսերը՝ Բագարատ: Իշխանության գլուխն անցավ Բագարատ: Ինչ վիճակի մեջ էր Արտանուջի մանուկ իշխանությունը կյուրապաղատի որդիների անչափահասության ժամանակ, անորոշ է: Գիտենք, որ Խալիդ Շայբանի այնուհետև վերստին և վերստին եկավ կուսակալության պաշտոնով և կռիվներ մղեց Վրաստանի սահմաններում Ծանարքի դեմ, ինչպես Իսահակ ամիրայի: Սրա վրա էր գնում, երբ ճանապարհին մեռավ Ջավախքի Խոզաբիր գյուղում 844 թվին, որ այժմ էլ կանգուն գյուղ է: Խալիդից հետո կուսակալ եկավ իր որդին՝ Մուհամմեդ: Սրա օրով է, որ հրապարակ է գալիս Բագարատը, նույնպես կյուրապաղատի կոչումով:

Բագարատ առավ կնության Սմբատ Աբլաբասի դուստրը: Քաղաքական ասպարեզում որդեգրեց մի ուղեգիծ, որ հար և նման էր Սմբատի վարելակերպին: Ի՞նչ դիրք էր բռնել նա Բյուզանդիայի հանդեպ, հայտնի չէ: Բայց արաբների նկատմամբ նրա քաղաքականությունը որոշ էր: Առանց վարանելու Բագարատ հարեց ոստիկան Մուհամմեդ Շայբանիին, երբ նա կռվում էր Թիփլիսի ըմբոստ ամիրայի դեմ: Արաբների ձեռքով իսկ կործանել վտանգավոր հակառակորդին պարզ հաշիվ էր:

Նույն գործելակերպին հավատարիմ մնաց և Բուղայի արշավանքի ժամանակ: Տարոնը և Վասպուրականը պատժելուց հետո, տեսանք, որ Բուղան ափ գնաց Թիփլիսի Իսահակ Շուաբի վրա, և բռնեց ու սպանեց ամիրային: Ափխազաց թագավորը՝ Թեոդոսը, փորձեց պաշտպանել Իսահակին: Բուղան նրա դեմ ղրկեց ուրիշ ուժերի հետ նաև Բագարատ Կյուրապաղատին: Չնայելով, որ Թեոդոսը Բագարատի քեռայրն էր, բայց և այնպես կյուրապաղատը ելավ նրա դեմ կռվելու: Իսկ երբ Բուղան բանակը շարժեց դեպի լեռնականները, Բագարատն իր եղբոր Գուառամի միջոցով, ինչպես և Սմբատ Խոստովանողը կամ Աբլաբասը զգուշացրին նրանց, որ արաբ զորքերը ներս չթողնեն: Լեռնականները ճանապարհները կտրեցին և արաբ բանակը ստիպվեց հետ քաշվել խոստովանելով իր անհաջողությունը: Բուղայի ձեռքով Իսահակին կործանելուց հետո, հերթական հարցն էր ազատվել

Բուղայի ճիրաններից: Լեռնականների դեմ ունեցած ձախորդությունը կոտրեց բյուրք զորավարի վարկը և հետ կանչվեց: Նրա տեղը եկավ սույն Մուհամետ Շայբանին հուզված երկիրն անդորրացնելու:

Բագրատունյաց քաղաքական ծրագիրների տեսակետից Թիփլիսի ամիրայի անկումը վճռական նշանակություն ուներ: Շուաբի տունը վտանգավոր էր ոչ միայն Վրաստանին, այլև արգելառիթ Հայաստանի բարգավաճման: Չէր կարելի վստահել, որ մի օր իրական տեր չէր դառնա երկու երկրներին էլ: Թվում է, որ նա զուրկ չէր շրջապատի համակրությունից: Խաահակի կինը քրիստոնյա դշխուհի էր, նրա զորքերի մեջ կար խութեցիներից կամ սասունցիներից կազմված հատուկ գունդ[1]:

Անուրանալի է, որ Շուաբի տունը բարեբեր եղավ այն մտքով, որ կենտրոնական իշխանության ուշադրությունը իր վրա առնելով, հարմարություն տվավ Բագրատունիներին հաստատուն ոտ դնել Կղարջք, հենվելով բյուզանդական պատվարին: Սակայն, Ճորոխի հովտից հառաջանալ դեպի Վրաստան և գրավել բուն վրական հողերը անկարելի էր Բագրատունիների համար, քանի որ Թիփլիսում բուն էր դրել Շուաբի տունը: Ճշմարիտ է Մարկվարտի կարծիքը, որ Բագրատունիները միմիայն Կղարջքի իշխաններ էին և Վրաստանի հետ կապ չունեին որչափ ատեն որ Թիփլիսի մեջ նստած էին Շուաբի բռնավորները:

Սրանց անկումից հետո Վրաստանը դառնում է կովախնձոր հայ Բագրատունիների և Ափխազի տերերի մեջ: Բուղայի հեռանալով, Հայաստանի իշխանությունը ստանձնեց Սմբատ Խոստովանողի որդին Աշոտ, որ 862 թվին եղավ իշխանաց իշխան և 886 թվին թագավոր:

Վերև տեսանք, որ Աշոտն իշխանաց իշխան նշանակվելուց հետո ձեռնամուխ եղավ նվաճելու և հնազանդեցնելու «զիշխանս Հայոց, զՎրաց եւ զԱղուանից»: Պատմագիրն ասում է՝ «որ եղեւ իսկ»: Պետք է կարծել, ուրեմն, որ Աշոտի գերիշխանության տակ էր նաև Արտանուջի իշխան Բագարատ Կյուրապաղատը: Արդյոք սա ևս գերվե՞ց Բուղայի կողմից նման Սմբատ Խոստովանողի, և հետո վերադարձավ, հայտնի չէ: «Վրաց տարեգիրք»-ը նրա մահը դնում է 876 թվին: Բագարատը Աշոտի կողմնակից էր, երբ վերջինս պատերազմի բռնվեց Ափխազաց Գիորգի I թագավորի հետ Վրաստանի պատճառով: Բագարատի եղբայր Գուռամ իր որդի Նասրա (= Ներսեհի) հետ Ափխազաց համակիր էր, մինչդեռ Բագարատի որդին Դավիթ և Լիպարիտ, Օրբելյանների նախահայրը, որ առաջին անգամ երևում է պատմության մեջ, Հայոց կողմն էին: Կռվի մանրամասնությունները հայտնի չեն, բայց արդյունքը կասկածից դուրս է, որ hօգուտ Հայոց էր: Աշոտ հաղ-

---

[1] Տաբարի, III, 1416. **Marquart**, Streifzüge, 460.

քանակեց և իր իշխանության տակ առավ Վրաց և Աղվանից երկրները և Կովկասյան լեռնականները:

Հավանորեն այս կուսակցական պայքարի հետևանքով էր, որ Գուռամ սպանեց իր որդու Նասրի ձեռքով Դավիթ Կյուրապաղատին՝ Բագարատի որդուն և հաջորդին, ըստ «Տարեգրքի», 881 թվին: Որ Գուռամը կուսակից էր Ափխազաց, երևում է նաև նրանից, որ իր դուստրը տվել էր Ափխազաց Ատրներսեհ թագավորին կնության:

«Տարեգիրք»-ը շփոթում է Գուռամին Բագարատի հետ, երբ Աշոտ իշխանաց իշխանին անվանում է եղբայր Գուռամի կնոջ (մի տեղ սխալմամբ եղբայր Գուռամի, բաց թողնելով **կնոջ** բառը)[1]:

Բագարատն էր Աշոտի քրոջ ամուսինը և ոչ Գուռամը, ինչպես գիտենք Վարդանից: Սա ասում է, որ Աշոտը Բագարատի մահից հետո «դնէ իշխան Վրաց զքեռորդի իւր», այն է Բագարատի որդուն՝ Դավթին: Սրա սպանությունից հետո հաջորդեց իր որդին՝ Ատրներսեհը, երբ հայերի օգնությամբ քշվեց նրա հակառակորդ և հորը մահվան պատճառ Նասրը:

Ատրներսեհը վայելեց և իշխանաց իշխանի որդու՝ Սմբատ թագավորի հովանավորությունն ու բարեկամությունը և նրա շնորհիվ արժանացավ թագավորական թագի: Ահա ինչ է ասում ժամանակակից պատմագիրը. «Մեծ Կուրապաղատն Վրաց՝ Ատրներսեհ անվրդով եւ անշուշտ ուխտ խաղաղութեան եւ սիրոյ միաբանութեան ընդ արքայի Սմբատայ պահէր ի բոլոր մասունս առ ի բովանդակ մտաց եւ ի զօրութենէ իւրմէ մեծաւ պատկառանօք իբրեւ **հօր հնազանդ լեալ,** կամ թէ եւս առաւել քան զայս, իբրեւ **զծառայ ի տեառնէ իւրմէ** կամաւ կրեալ զսահման երկիւղի չափաւոր մոլութեամբ եւ զաչս իւր մշտակարկառ յարքայ հարեալ համակեալ մեծաւ զգուշութեամբ եւ նմա զանձն եւս հաւատացեալ: Ընդ որ յաւէտ իմն հաճեալ հաւանեալ արքայն Սմբատ բազմազեղ նախախնամութեամբ յինքն զնա ածէր յանձանձէր: Ապա **թագ կապեալ** նմա մեծապատիւ ճոխութեամբ եւ զեղեցկայարմար զարդու, նաեւ զինու զարդարեալ ըստ օրինի թագաւորաց, կացուցանէ զնա թագաւոր Վրաց աշխարհին եւ երկրորդ իւրոյ տէրութեանն զնա հաստատէ»[2]:

Ըստ «Վրաց տարեգիրք»-ի, թագադրությունը կատարվեց 899 թվին:

Այսպիսով Բագրատունյաց վրական ճյուղը ևս հասավ արքայական թագի և տեր դարձավ Վրաստանի: Ատրներսեհ շարունակեց զգալ և պահել ստեղծված դրությունը հանդեպ Հայոց թագավորի Սմբատի: Միևնույն ծառի երկու ոստերն էին և Սմբատ միայն ավագության կապակից մեծարանքն էր, որ վայելում էր: Երբ Եգերաց թագավոր Կոստանդինը, որ ամուսնացել էր

---

[1] **Brosset**, I, 191.

[2] **Հովհաննես Կաթողիկոս**, էջ 101-102:

Ատրներսեհի դստեր հետ, փորձեց գրավել սրա հողերը Ալանց դրան շուրջը, Սմբատ ընդդիմացավ և Ատրներսեհի հետ միանալով սանձեց Կոստանդինին: Այն ազգերը «հաւանեալք եւ հնազանդեալք եւ ճուաճեալք էին ընդ ձեռամբ արքային Սմբատայ», - ասում է պատմագիրը, մինչ սպասելու էր, որ այս հողերը պատկանեին Ատրներսեհ թագավորին:

Տոհմական ընդհանուր սեփականության գիտակցությունը տակավին արթուն էր այդ ժամանակ: Արդարև, Սմբատ իր տերության սահմանները հաշվում էր «մինչեւ զԿարնոյ քաղաք եւ անդր եւս քան զԿղարջս քերեալ մինչեւ առ ափն ծովուն մեծի եւ մինչեւ ցսահմանս Եգերացւոց եւ մինչեւ ցստորոտ մեծի լերինն Կովկասու, զԳուգարացիս, եւ զԾանարս մինչեւ ցդուռն Ալանաց առեալ եւս յինքն եւ զամրոց դրան պահակի նոցա. եւ անտի ի հարաւակողմն կոյս զԿուր գետով մինչեւ ի քաղաքն Տփղիս եւ զՈւտի գաւառ մինչեւ ի քաղաքն Հունարակերտ և մինչև ի Տուս և ի Շամքոր»[1]:

Սմբատ իր տերության մեջ էր համարում գրեթե բոլոր այն երկիրները, որոնք պատկանում են Վրաց Բագրատունիներին, և անգամ գրավել էր Դարիալի պահակը պաշտպանող ամրոցը, ասել է, թե հյուսիսային սահման էր Կովկասյան շղթան: Սմբատը նայում էր Ատրներսեհի վրա, որպես միևնույն ընտանիքի անդամի: Հակառակ կրոնական խտրության Ատրներսեհ հնարավոր էր գտնում Զատիկը անցնել Սմբատի մոտ և նրա հետ միասին: Սմբատ և Ատրներսեհ, երկու եղբոր թոռան թոռներ էին. բացի դրանից Ատրներսեհ Սմբատի հորաքրոջ թոռն էր (4):

## ԲԱԳՐԱՏՈՒՆԻՔ ԱՂՎԱՆՔՈՒՄ

Տեսանք, որ Ատրներսեհ Կայրի երեք եղբորորդիք Տարոնից եկան Շաքի և հաստատվեցին այնտեղ: Ատրներսեհ Կայրը Աշոտ Բագրատունին է և ուրեմն նրա եղբորորդիք նույն տոհմիցն են: Նրանք խարել էին իրենց հորեղբոր աչքերը: Այս ոճիրի իսկական հեղինակը, գիտենք, որ Գրիգոր Մամիկոնյանն էր: Սակայն Բագրատունիք ևս անպարտ չէին: Աշոտի ոսոխներն ոչ միայն Մամիկոնյան Դավիթ և Գրիգոր եղբայրներն էին, այլև «Սմբատայ որդիք», որոնց անունները պատմագիրը չէ տալիս: Այս կետը պետք ունի բացատրության:

Ղևոնդ պատմագրի արտահայտությունն այնքան անորոշ է, որ անուշադիր ընթերցողը կարող է այն տպավորությունն ստանալ, թե Սմբատի որդիք նույն Մամիկոնյան եղբայրներն էին: Մինչդեռ Սմբատ անունը հատուկ է Բագրատունի տան և նրա որդիները զատելու է Մամիկոնյան եղբայրներից:

Արաբական ոստիկանի հրամանով, Աշոտի հակառակորդները կալա-

---

[1] **Հովհաննես Կաթողիկոս**, էջ 89-90:

նավորվեցին որպես խռովարարներ և ղրկվեցին Դամասկոս: Երբ Օմմայան տան դեմ ելան Աբբասյանները և գահակալական խռովությունները սկսվեցին, Մրվան ստիպվեց հեռանալ Հայաստանից: Առիթից օգտվեցին և փախան «զերծեալ որդիքն Սմբատայ ի կալանաւոր պատանդէն» և եկան Վասպուրական: Լի վրեժխնդրությամբ, սրանք աղմկեցին Աշոտի դեմ և մինչև անգամ հարձակում գործեցին Աշոտի վրա և կամենում էին սպանել: Աշոտը դիպվածով փրկվեց փորձանքից:

Երբ Աշոտի հովանավոր Մրվան հաղթեց և ամիրապետ դարձավ, Աշոտի դիրքը նորից ամրացավ: Մրվան, «տեղեկացեալ զամբաստութիւնն զորդւոցն Սմբատայ և զոր ինչ արար ընդ նա (այսինքն՝ ընդ Աշոտ) Դաւիթ եղբայր Գրիգորի», հրամայեց բռնել Դավթին և ձեռքն ու ոտը կտրելով սպանել: Խոսքը Աշոտի սպանության փորձի մասին է: Հարձակվել էին Սմբատի որդիք, բայց մեղադրվում է և տուժում միայն Դավիթ: Եթե Սմբատի որդիք Դավիթ և Գրիգոր եղբայրները լինեին, պետք է որ Գրիգոր ևս պատիժ կրեր: Բնագիրը երկդիմի է և ավելի հավանական է, որ Սմբատի որդիների ամբաստանությունը հակադրվում է Դավթի գործին: Պատմագիրն անաչառ չէ Մամիկոնյանների հանդեպ: Գրիգոր կազմակերպեց նախարարների համաձայնությամբ ապստամբություն արաբների դեմ: Գրիգոր առաջարկեց Աշոտին միանալ ընդհանուր գործին: Սա հավանություն տվեց, բայց հետո հրաժարվեց: Գրիգոր չարացավ, բռնեց Աշոտին և հանձնեց Դավթի ծառաներին, որոնք և խարեցին նրա աչքերը:

Ղևոնդը չէ քաշվում հայտարարելու, որ Գրիգորի ապստամբական քայլը մի «խորամանկութիւն էր վասն հանելոյ զիշխանութիւնն Աշոտոյ»: Այսպիսի միակողմանի և աչառու պատմագրից բնական էր սպասել, որ կատարված ոճիրը բարդվեր միմիայն Մամիկոնյանների վրա: Մինչդեռ վրական ավանդությամբ ոճրագործները անբախտ իշխանի եղբորորդիքն էին, ուրեմն Բագրատունիներ: Բնական է սրանց մեջ տեսնել Սմբատի որդիներին: Երկու հակառակ վկայությունները կարելի է հաշտեցնել, ընդունելով, որ հանցանքը գործել էին Մամիկոնյանները, գործակից ունենալով Բագրատունի Սմբատի որդիներին: Ղևոնդ անվանում է Գրիգորին «ի Մամիկոնեան տոհմէ», «ի տանէն Մամիկոնեան», և ո՛չ երբեք որդի Սմբատա, որ սպասելի էր եթե իրոք Գրիգոր Սմբատի որդին լիներ:

Սմբատի որդիք, որոնք նախանձում էին Աշոտի հաջողության, կարծում ենք, նշանավոր Սմբատ Կյուրապաղատ Բյուրատյանի որդիներն են: Սրանք ամենայն իրավամբ կարող էին թիկնածել այն պատվին, որին արժանացել էր Աշոտը: Սմբատ Բյուրատյան, սակայն, Աշոտի ո՛չ եղբայրն էր և ո՛չ հորեղբայրը: Եթե, իրոք, մերձավոր կապ կար Աշոտի և Սմբատի որդիների մեջ, ինչպես վկայում է վրական ավանդությունը, հնարավոր է

մտածել մի ուրիշ Սմբատ Բագրատունու մասին: Ղևոնդի ասելով, Սմբատի որդիք ազատվելով պատանդությունից եկան մտան Վասպուրական և այստեղ սկսեցին իրենց շահատակությունները: Արդյո՞ք խոսքն այն Սմբատի մասին չէ, որ Վասպուրական իշխան է կոչվում և ընկավ Նախճվանի աղետի ժամանակ 705 թվին: Թերևս, այս Սմբատը Աշոտի հորեղբայրն էր: Աշոտի հայրը Վասակն էր և սրա եղբայրը՝ Բագարատ: Աշոտից հետո Բագարատի որդին Սահակ կարգվեց իշխան Հայոց: Եթե Սմբատն ևս Աշոտի հորեղբայրն էր, հնարավոր էր, որ նրա որդիք իրավունք ունեին թեկնածու համարվել այն պատվին, որ վիճակվել էր Աշոտին, իրենց հորեղբոր որդուն:

Տարաբախտաբար, հայտնի չէ այս զույգ Սմբատների որդիների և ընդհանրապես հետագա սերնդի վիճակը: Իններորդ դարի սկզբում մի Բագրատունու զորեղ ձայն է լսվում հեռավոր Աղվանքից: Հայոց 270 = 821-822 թվին Պարտավից արաբ մի գունդ արշավեց Ամարաս գավառը, գերեց հազար մարդ և դարձավ ամրացավ Մեծիրանց գավառի սահմանում Շիկաքար կոչված տեղը: «Արի եւ շքեղատեսակն Սահղի Սմբատեան Եռանշահիկն տէր քաջազօր եղբօրօքն (sic) իւրովք եւ զօրօք» հարձակվեց լուսադեմին ասպատակավորների վրա, ջրդուցան արեց և ազատեց գերիներին[1]:

Սահղի Սմբատյան ուղղելի է Սահլի Սմբատյան, այսինքն՝ Սմբատի որդի Սահլ: Սա այն նշանավոր իշխանն է, որ 837 թվին ձերբակալեց հռչակավոր ապստամբ աղանդավոր Բաբեկին կամ Բաբանին, ինչպես անվանում են մեր մատենագիրները, և հանձնեց արաբ զորավար Աֆշինին[2]: Այս մասին խոսում են ոչ միայն արաբ, այլև հայ պատմագիրները: Հայոց 286 թվին = 837-838 Բաղդադից ղրկված 12 հազարանոց հեծյալ մի գունդ մտավ Աղվանից աշխարհ, պատմում է Կաղանկատվեցին, և Սահլ Սմբատյան, որ «յարքայից Զառմիհրական տոհմէն էր», հարձակվեց ինչպես արծիվ, որ խոյանում է տկար թռչունների վրա և հալածեց արաբներին: Նույն տարին Սահլ Սմբատյան ձերբակալեց աշխարհավեր Բաբանին և տվեց ամիրապետի ձեռքը և որպես վարձատրութիւն ստացավ «իշխանութիւն ի վերայ Հայոց, Վրաց եւ Աղուանից տիրել արքայաբար»[3]:

Չնայելով իր մատուցած ծառայության և բարձր դիրքին, նենգավոր Բուղան չկասեց Սահլին ևս կցել կալանավոր իշխանների կարավանին 855 թվին, ինչպես վկայում է Թովմա Արծրունին: Կարևոր է այս վկայության մեջ այն, որ էր «Սահլ Սմբատայ որդի Շաքեոյ տէր, որ զԲաբան կալաւ»[4]:

---

[1] **Մովսես Կաղանկատվացի**, Գ, գլ. 19, էջ 53, 54:

[2] **Marquart**, Osteuropäische und Ostasiatische Streifzüge, p. 460.

[3] Կաղանկատվացու նորագյուտ հատված, հրատ. **Խաչիկ** վարդապետի, **«Արարատ»**, 1897, ապրիլ:

[4] **Թովմա Արծրունի**, Գ, գլ. 11, էջ 214: Այս տեղեկությունն այնքան վստահելի չէ

Արդ Սահլ միակ հայ իշխանն է, որ հիշվում է որպես Շաքիի տեր: Ի՞նքն էր գրավել այդ երկիրը, թե իր հայր Սմբատը կամ անծանոթ պապը, հայտնի չէ: Անտարակույս, Սահլի ընտանիքը ներկայացնում է Առանշահիկ Կույրի եղբորորդիներին, որոնք եկան Շաքի: Ապա ուրեմն գործ ունենք Բագրատունյաց մի ճյուղի հետ, որ հաստատված է Շաքի, որ է արդի Նուխի քաղաքի շրջանը:

Կաղանկատվացու խոսքը, թե Սահլ Եռանշահիկ և կամ Զարմիհրական տոհմից էր արժեք չունի: Եռանշահիկ ասելով հասկանում է հին Հայկազնյան տունը, որ սակայն, իր իսկ վկայությամբ, տեղի տվեց Միհրական տոհմին: Միհրան նենգորեն կոտորեց նախկին տոհմի բոլոր ներկայացուցիչներին, խնայելով միայն Զարմիհրին, որը փեսայացել էր նորեկ տան: Ի՞նչ եղավ Զարմիհրի սերունդը, հայտնի չէ: Պատմագրի որակումն այն իմաստն ունի, թե Սահլ չէր պատկանում Աղվանքում տիրող Միհրական տոհմին: Իսկ վրական ավանդությունը Շաքի գաղթող հայ իշխաններին համարելով Առանշահի Կույրի, այսինքն՝ Աշոտ Կույրի, եղբորորդիք, վկայում է նրանց Բագրատունի ծագումը: Սահլի հոր Սմբատ անունը, որ զուտ Բագրատունի է, հաստատում է նրա ծագումը: Ո՛չ Աղվանքի և ո՛չ Սյունյաց իշխանական տոհմերի մեջ չէ պատահում Սմբատ անունը նախքան նրանց Բագրատունիների հետ խնամություն հաստատելը:

Առանց վարանելու կարելի է պնդել, որ Սահլի հայր Սմբատ սերում էր «Սմբատայ որդիներից», սրանցից մեկի որդին էր հավանորեն և իր անունը պարտական իր պապին, Սմբատ Կյուրապաղատին կամ Սմբատ Վասպուրականի իշխանին: Բաբեկի ձերբակալումով Սահլը կարգվեց Հայոց, Վրաց և Աղվանից իշխան 838 թվին: Բուղայի խարդախության զոհվեց 855 թվին:

Սահլ արաբական անունն է: Նրա բուն հայ անունը մոռացված է: Սահլ ղրկեց կալանավորված Բաբեկին Բաղդադ իր որդու Մուավիայի միջոցով: Հիջրի 238 = 852 թ. հունիս - 853 թ. հունիս Մուավիա հիշատակվում է որպես պատրիկ, այսինքն՝ իշխան, իր հոր նման, Հայոց, Վրաց և Աղվանից[1]:

Մեծարանց Ս. Հակոբի վանքի մի արձանագրության մեջ հիշվում է Հովհաննես անունով մի իշխանի անուն. «ՅԲ թուականութե<ա>ն Հայո<ց> ի ժամանակ Յովանիսի Աղվան<ից> իշխանի ես Սողոմ<ոն> Մեծարանց եպիսկ<ոպոս> կանգնեցի զս<ուրբ>»...[2]:

---

երևում: Կալանավորների թվում Թովման հիշում է «Գրիգոր Սիւնեաց տէր», որ է Սուփան, իսկ ըստ Կաղանկատվացի (հր. Էմինի) Գ, գլ. 20, էջ 60, «Սուփան վախճանեցաւ ի Վայոց ձոր 852 թուին եւ ի միւս տարին եկն Բուղա ի Հայս»:

[1] Բուղան հեռացավ Հայաստանից, տանելով իր հետ գերված իշխաններին, 241 հիջրի = 855-856: Եթե գերիների մեջ էր նաև Սահլ, ի՞նչպես մեկնել, որ 852 թվին արդեն որդին պատրիկ էր, այսինքն՝ իր տեղն էր բռնել:

[2] **Խաչիկ** վարդապետն է ընդօրինակել և հրատարակել, «Արարատ», 1897, ապրիլ:

Հայոց 302 թ. համապատասխանում է 853-854 թ.: Այս ժամանակ Աղվանից իշխան էր Մուավիա: Թվում է, որ Հովհաննես Մուավիայի հայ անունն է, ուրեմն Սահլի որդին: Արդարև, Կաղանկատվացու վերև հիշված նորագյուտ հատվածի մեջ, Ամրիայի արշավանքը հիշատակելուց հետո Հայոց 287= 838 թվին, կարդացվում է հետևյալը. «ի սոյն ամի տերանց տէրն Յովաննէս, որ Հայոց Վրաց եւ Աղւանից եղեւ տէր, խնդրեաց յարքունեացն կրկին անգամ զԲու(ղ)խար Խոյտա Փատղոս երիցս այսոցիկ աշխարհաց»:

Նույն 287= 838 տարին, տեսանք, որ Սահլի որդի Մուավիան էր հրապարակի վրա: Այստեղից ևս հետևում է, որ Հովհաննես նույն Մուավիան է: Հովհաննես 838 թ. տերանց տեր էր, իսկ հետագայում տեր, այսինքն՝ պատրիկ կամ իշխան եղավ երեք աշխարհների: Վահեվանի մի արձանագրության մեջ Շապուհ Բագրատունին, Աշոտ I թագավորի որդին և Սմբատ թագավորի եղբայրը իրեն անվանում է «Հայոց սպարապետ, տէրանց տէր, որդի Աշոտոյ, թագաւորի ի ժամանակս Հայոց թագաւորի մեծին Սմբատայ, հարազատ եղբաւր իմոյ»[1]:

Ինչպես, որ Շապուհ, իր եղբոր թագավորության ժամանակ, «տէրանց տէր» է, նույն մտքով և Հովհաննես «տէրանց տէր» է իր հոր Սահլի իշխանության ժամանակ: Արուճի մի արձանագրության մեջ, 869 թվից, գրված է «յիշխանութեան Աշոտոյ եւ ի տէրութեան Սմբատայ Հայոց սպարապետի Բագրատունւոյ»[2]:

Այստեղ տերություն նույն իմաստն ունի ինչ որ տերանց տերություն:

Մխիթար Այրիվանեցին Հայոց 320=871 թվի տակ ունի մի արտաքո կարգի կարևոր նկատողություն, այն է «Համամ որ եւ Յոհաննէս Բագրատունի»: Սրանով հաստատվում է նախ մեր տեսությունը Սահլի Բագրատունի ծագման մասին: Սոսկ մի ենթադրություն դառնում է գրական փաստ: Ապա հայտնվում է, որ Մուավիա-Հովհաննեսը մի երրորդ անուն ևս ուներ, Համամ: Եռակի անվանակոչումը հավանական չենք համարում և կարծում ենք Համամ անունն իրավունք է տալիս սրբագրելու արաբ հեղինակների Մուավիա որպես աղավաղում հայ Համամի: Արաբ գիրը գայթակղիչ է այս կարգի շփոթությունների համար: Աբուլ Կասիմ Մուհամետ ալ Հավկալ ամիրապետի կողմից ղրկվեց բուլղարների մոտ դեսպանությամբ 948 թվին: Հավկալ անցավ Հայաստանից, այցելեց Աղվանից երկիր և, ինչպես սովորություն ունեին արաբ ճանապարհորդները, գրի առավ հետաքրքրական տեղեկություններ կովկասյան ժողովուրդների մասին: Այս հեղինակն ասում

[1] **Ստեփանոս Օրբելյան,** գլ. 36. **Կ. Կոստանյանց,** Վիմական տարեգիրք, էջ 6:

[2] **Կ. Կոստանյանց**, Վիմական տարեգիրք, էջ 3, արտատպած **Հ. Շահխաթունիի** «Ստորագրութիւն»-ից, էջ 384:

է, որ Կուր գետի և Շիրվանի միջև մի երկիր կա, որ կոչվում է Շաքի և որի ժողովուրդը քրիստոնյա է, թեև կան նաև մուսուլման առևտրականներ և արհեստավորներ: Իր այցելած պահին Շաքի երկրի իշխան էր Աղեր իբն Սիմա իբն Համայան[1]: Դժվար չէ նկատել, որ իշխանի անունը սխալ է կարդացված և որ պետք է կարդալ Ատրներսեհ իբն Համամ, այսինքն՝ Ատրներսեհ որդի Համամա: Ինչպես որ Համամ դարձել է այստեղ Համային, անհնար չէ, որ Տաբարի[2] մոտ նույն անունը աղճատվեր և դառնար Մուավիա:

Թե արդարև Համամ Ատրներսեհ անունով որդի ուներ, այդ գիտենք Անանիա կաթողիկոսի վկայությունից: Տասներորդ դարու կեսին, Իբն-Հավկալից քիչ հետո, Անանիա հայրապետը գնաց Աղվանից աշխարհը եկեղեցական վարչական գծտություններ վերացնելու նպատակով: Այս առթիվ հիշում է տեղական իշխանների անուններն իր **«Յաղագս ապստամբութեան տանն Աղուանից»** գրության մեջ: «Ունէր զարոր թագաւորութեան, ասում է ի միջի այլոց,-յայնժամ Իշխանակ, որդի տեառն Ատրներսեհի, թոռն երանել<ւ>ոյն Համամայ, բարեպաշտ թագաւորին Աղուանից եւ էր դարձեալ յաղանդն Քաղկեդոնի եւ մոռացեալ զհայրցն դաւանութիւն»[3]: Այստեղից իմացվում է, որ Համամի որդին էր Ատրներսեհ և սրա որդին՝ Իշխանակ: Այսպիսով գիտենք Սահլ Սմբատյանի երեք հաջորդական սերունդը:

Համամ Հովհաննեսը հարգելի դեմք է հայ հեղինակների մոտ: Նկատենք նախ, որ Մխիթար Այրիվանեցու **յի** = **320** թիվը վրիպակ է իր, թե գրչի կողմից: Եթե կարդանք **յբ** = **302** կստանանք Մեծարանց Ս. Հակոբ վանքի արձանագրության թիվը: Հովհաննես Կաթողիկոսը պատկառանքով է խոսում Համամի մասին: Երբ Գեորգ կաթողիկոսը Սմբատ թագավորի հրահանգով գնաց Ատրպատականի էմիր Ափշինի մոտ հաշտության առաջարկով, Ափշին ձերբակալեց կաթողիկոսին և ազատելու համար փրկանք էր պահանջում: Հովհաննես Կաթողիկոսը, որ այն ժամանակ դրան եպիսկոպոս էր, հավաքեց պահանջած գանձը և ուղարկեց «առ մեծ իշխան Արեւելից Համամ»: Սա իր կողմից լրացրեց փրկագինը և ազատեց մուսուլման իշխանի կապանքներից թշվառ հայրապետին[4]:

Կաղանկատվացու վկայությամբ, Ափշինի գրոհը և կաթողիկոսի կալանավորումը տեղի ունեցավ Հայոց 342 թ. = Քրիստոսի 893 թվին և ազատողը «բարեպաշտն Համամ որ եւ Աղուանից եղեւ թագաւոր»: Այս միջոցին

---

[1] **M. C. D'Ohsson,** Des peuples du Caucase, 1828, p. 18-19.

[2] **Tabari,** III, 1232.

[3] Հրատ. Գ. Տեր-Մկրտչյան, «Արարատ», 1897, մարտ:

[4] **Հովհաննես Կաթողիկոս,** էջ 94 (հրատ. Մ. Էմինի):

Համամ թվում է, թե դեռ թագավոր չէր, թեև հետևյալ խոսքերն կարծես հակառակն է ցույց տալիս. «զկործանեալ թագաւորութիւն տանն Աղուանից Համամ նորոգէր, որպէս Աշոտ Բագրատունի՝ զՀայոց թագաւորութիւնն: Այսք ի միում ժամանակի գործեցան»[1]: Չնայելով այս վերջին խոսքերին, կարծում ենք, որ Համամ տակավին թագ չէր կապել 893 թվին: Հովհաննես Կաթողիկոս «մեծ իշխան» է անվանում նրան Գեորգ կաթողիկոսի դեպքի առթիվ խոսելիս, մինչդեռ Ատրներսեհին կոչում է թագավոր: Ասողիկի մոտ, Համամ թագավոր է, երբ ազատեց Գեորգ կաթողիկոսին, թերևս հետին թվով է թագավոր անվանված[2]:

Աղվանից պատմագրի մի խուլ նկատողությունն արժանի է ուշադրության: Համամ հանցանք էր գործել, «վասն սնոտի այս կենացս զպարտ արեան եղբօրն ժողովեալ յանձին իւրում»:

Ասել է, թե Համամ սպանել էր իր եղբորը, արդյո՞ք իշխանությունը գրավելու համար, թե որևէ ուրիշ պատճառով, հայտնի չէ:

Համամին ժամանակակից է Համամ Արևելցի անունով ծանոթ հեղինակը, որին Ասողիկ վերագրում է մի շարք երկեր[3]: Շատ հավանական է, որ այս հեղինակը նույն Համամ թագավորն է, թեև մատենագիրների լռությունը այս մասին երաշխիք չէ այս ենթադրության:

Համամ ուշագրավ դեմք է և իր գործունեության ոգով շատ նման իր ժամանակակից Աշոտ թագավորին: Աշոտի հայրը Սմբատ գերի ընկավ Բուղայի ձեռքը, բայց ինքն Աշոտ մնաց իր դիրքում և մտացի քաղաքականության հետևելով հասավ արքայական թագի: Համամի հայրը Սահլ Սմբատյան ևս չկարողացավ վրիպել Բուղայի կապանքներից, չնայելով այն խոշոր ծառայության, որ ինքնաբերաբար բերել էր արաբ իշխանության, ձերբակալելով այնպիսի մի վտանգավոր թշնամու որպիսին էր սհավոր Բաբեկը: Սահլի որդին Համամ, Աշոտի նման, զերծ մնաց աղետից և խոհուն քայլերով առաջացավ մինչև արքայական գահ: Մեծ արժանիք էր, որ կարողացավ լեզու գտնել Ատրպատականի էմիր Ափշինի հետ, երբ սա կռիվ էր մղում Սմբատ թագավորի դեմ:

Համամի որդու՝ Ատրներսեհի և թոռան՝ Իշխանակի մասին շատ բան չգիտենք: Հովհաննես Կաթողիկոս անձամբ ճանաչում էր Ատրներսեհին և Յուսուփի ու Սմբատի կռիվների փոթորկալից շրջանին, երբ կաթողիկոսը ստիպված էր աստանդական կյանք վարել, այս կամ այն իշխանի մոտ

[1] **Մովսես Կաղանկատվացի,** Գ, գլ. 21:

[2] **Ասողիկ,** Գ, գլ. 3:

[3] **Ասողիկ,** Գ, գլ. 2: հաշվում է՝ «Վերլուծութիւն Առակաց», «Մեկնութիւն Յովբայ»՝ Ո՞վ է դա հատվածի, Սաղմոսագլուխների «Օրհնութիւնք», «Ամբիծք» և «Վերլուծութիւն քերականի»: Վերջինս հրատարակված է մեր **«Արվեստ Դիոնիսյա և հայ մեկնությունք»** ռուսերեն աշխատության մեջ (1):

ապավինել, վայելեց նաև Ատրներսեհի հյուրընկալությունը: Կաթողիկոսը գնաց նախ Աղվանից մեծ իշխան Սահակի մոտ, և ապա «առ թագաւորն նորունն Ատրներսեհ, որ ըստ արեւելից հիւսիսոյ Կովկասու, զի եւ նոքա ի ժողովրդենէն մերմէ եւ խաշն արօտի մերոյ էին»[1]:

Իբն-Հավկալի այցելության 948-949 թվերին Ատրներսեհ տակավին կենդանի էր: Իսկ երբ Անանիա կաթողիկոս երկրորդ անգամ գնաց Աղվանք 958 թվին, Ատրներսեհին արդեն հաջորդել էր իր որդի Իշխանակը, որ «էր դարձեալ յաղանդն Քաղկեդոնի եւ մոռացեալ զհարցն դաւանութիւն»: Այս անձը ծանոթ է նաև «Վրաց պատմությունից» ուր կոչվում է Իշխանիկ: Սա Հերեթի իշխանն էր և հայտնի դարձավ նրանով, որ Հերեթը, որ մինչև այն ժամանակ աղանդավոր էր, ընդունեց ուղղափառություն շնորհիվ Իշխանիկի մոր՝ Դինարի[2]: Վերջինս Գուրգենի քույրն էր, իսկ Գուրգեն Աջարայի և Կուելի իշխան իշխանաց էր (896-941), ժամանակակից Աղվանից Ատրներսեհի: Դինար և Գուրգեն, քույր և եղբայր, Աշոտ Կյուրապաղատի թոռան թոռներն էին: Դինար, վրացի իշխանուհի, հարս գալով Համամ թագավորի տունը, պատվաստեց վրական դավանանքը, այսինքն՝ քաղկեդոնականությունը, նախ իր որդուն Իշխանիկին և ապա նրա միջոցով ամբողջ երկրին, Հերեթին որ է Շաքի: Հովհաննես Կաթողիկոս համարում էր Ատրներսեհի ժողովուրդը «մեր արօտի խաշն», քանի որ այն ժամանակ դեռ հայ դավանություն ուներ, եւ յետոյ, Իշխանիկի մոր ջանքով, խորթացավ, միանալով վրաց: Կրոնափոխությունը համանիշ էր ազգուրացության:

Վրական տեղեկությամբ, Կախեթի տերը Կյուրիկե († 918), որ քորեպիսկոպոս էր կոչվում, և Ափխազի թագավոր Կոստանդին († 920) միասին գնացին Հերեթի Վեջին քաղաքի դեմ և պաշարեցին: Քաղաքն ընկնելու մոտ էր, երբ Ատրներսեհ պատրիկը բանակցության մեջ մտավ և հաշտություն առաջարկեց, համաձայնելով զիջանել պաշարողներին քանի մի վայրեր և նրանց թվում Գավազնի քաղաքը[3]:

Հերեթի իշխանը, պատրիկ Ատրներսեհը, ոչ այլ ոք է, քան մեզ ծանոթ Ատրներսեհ, Համամի որդին և հաջորդը, և Իշխանիկի հայրը ու նախորդը: Անցքը տեղի ունեցավ 915 թվին, երբ Հերեթի-Շաքիի իշխանն Ատրներսեհն էր: Այս տեղեկությունը խիստ հարգի է ուրիշ նկատումով: Շաքի բռնում է այժմյան Նուխի քաղաքի շրջանը, Այրի գետակի ավազանը: Սա ստորին Ալազանի գլխավոր վտակն է: Գավազնի քաղաքը գտնվում է Ալազանի վերին հովտում, Թելավ քաղաքի հանդեպ, գետի արևելյան ափի վրա:

---

[1] **Հովհաննես Կաթողիկոս,** էջ 119:

[2] **Brosset**, I, 279.

[3] Նույնը, I, 277-278:

Հետևապես Շաքիի Բագրատունիների իշխանությունը ընդգրկում է Ալազանի ձախակողմյան եզերքը գրեթե ամբողջապես, այսինքն՝ Ալազանի և Կովկասյան շղթայի մեջ սեղմված երկայնաձիգ հովիտը:

Իշխանակի հետ Անանիա հիշում է 958 թվի ժողովի անդամներից նաև մի «Սենեքերիմ իշխանաց իշխան», որ տարբեր անձ է համանուն իշխանից, որ Խաչենի Գրիգորի որդին էր: Իշխանակը թագավոր էր, ուստի իշխանաց իշխան Սենեքերիմ կարող էր լինել նրա որդին և գահաժառանգը: Ինչպես վերև հիշեցինք թագաժառանգները կոչվում էին իշխան իշխանաց կամ տեր տերանց: Կարծում ենք, որ այս տոհմին են պատկանում նաև Համամ և իր որդի Գագիկ, որ հիշում է Վարդան մի բավականին շփոթ պատմության մեջ: Մամ անուն մի պարսիկ կնոջ երեք որդիները հաջողում են գրավել տեղական մուսուլման իշխաններից Գանձակ, Պարտավ և Շամքոր քաղաքները: Կրտսեր եղբայրը Փատլուն ձեռնամուխ է լինում մոտիկ հայ իշխանների հողերին, ձերբակալում է Խաչենի իշխանին և խլում ինչ ինչ վայրեր, որի մասին խոսք կլինի ստորև: Նաև կանչում է իր մոտ Համամի որդուն Գագիկին, «զԳագիկ որդի Համամայ զտէրն Տանձեաց», սպանում և տիրանում նրա երկրին:

Այս Փատլունը Շեդադյան համանուն իշխանն է (985-1030): Համամ և Գագիկ ապրում էին ուրեմն 985-1030: Այս պարագան նպաստավոր է համարելու Համամին որդի կամ հաջորդ Սենեքերիմի, եթե միայն Համամ իրոք, պատկանում է նույն տոհմին: Այս վերապահությունը ծագում է այն հանգամանքից, որ Համամ և Գագիկ հիշվում են որպես տեր Տանձյաց, մինչդեռ իրենց ենթադրյալ տոհմը տիրում էր Շաքե: Տարաբախտաբար Տանձիքի տեղը հայտնի չէ[1]: Մինչև անգամ եթե Շաքեի շրջանում չգտնվի, կարելի է, որ Շաքեի տոհմը հետզհետե տկարանալով, պահել է իր հին կալվածներից միայն Տանձիքի շրջակայքը ավելի մոտ հայ սահմաններին, քան Շաքե: Արցախի մի արձանագրությունից 997 թվից հայտնի է Գագիկ իշխանաց իշխան: Թվականը ներում է նույնացնել նրան Համամի որդու հետ, երբ նա տակավին իշխանաց իշխան էր, բայց դժվար է պնդել: Եթե մեր այս թեական վարկածները ընդունելի են, Շաքեի Սահլի վերջին շառավիղները կլինեն՝ Սենեքերիմ, Համամ և Գագիկ, և շարունակված մինչև 1030 թվականները:

Թվում է, թե Սահլի սերունդը թևակոխել է մինչև Խաչեն և Սոթք և այստեղ հիմ դրել տոհմական մի նոր գծի, որ կարելի է անվանել Արցախի գիծ:

[1] **Մովսես Կաղանկատվացի,** Բ, գլ. 50, հիշում է Տանձիք, որտեղից էր Հովսեփ Անապատական: Կարծես, թե այս Տանձիքը Արցախի շրջանումն էր: Սույն անունով գյուղ կարող է նաև այլ տեղ լինել:

Հնում Արցախ էր կոչվում Խաչեն և Տրտու (Թարթառ) գետերի լեռնակողմը, որի էական մասը կազմում է այսօր Լեռնային ինքնավար Ղարաբաղը: Մովսես Կաղանկատվացին և հետագա պատմագիրները Աղվանից ասելով հասկանում են առավելապես Արցախ և Ուտիք: Նույն ըմբռնումն ունի նաև Խորենացին: Անանունի մոտ չկան Սիսակ և Առան էպոնիմները: Պարսիկները կոչում էին Սյունիք Սիսական և Աղվանք՝ Առան: Այստեղից մեր Պատմահայրը ստեղծել է Սիսակ և Առան որպես նախահայրեր երկու երկիրների: Առան «ժառանգեաց զդաշտն Աղուանից եւ զլեռնակողմն նորին դաշտի, ի գետոյն Երասխայ մինչեւ ցամուրն Հնարակերտ»[1]: Վերջինը գտնվում էր մոտավորապես արդի Աղստևի (Աղստափայի) շուրջը: Ասել է թե, ըստ Խորենացու, Աղվանից կամ Առան բռնում էր դաշտային և լեռնային Ղարաբաղ և Ուտիք, որ ձգվում էր Պարտավից (Բարդա) մինչև Աղստևի շրջանը:

Առանը սերում էր Սիսակից, ուստի և Առանի իշխանական տունը Կաղանկատվացին կոչում է Հայկազյան[2]: Այս տունը իշխեց հնուց մինչև վեցերորդ դարի վերջերը, երբ Միհրան Պարսիկը գրավեց երկիրը և հիմ դրավ Միհրական հարստության: Վերջին շառավիղը Միհրական տան, Վարազ-Տրդատ սպանվեց Փիլիպպոս Սյունյաց իշխանի որդու Ներսեհի կողմից 821 թվին, ուղիղ այն տարին, երբ Սահլ Սմբատյան հալածեց Պարտավի հրոսակներին Մեծիրանց գավառի Շիկաքար գյուղից: Ներսեհ չխնայեց նաև Վարազ-Տրդատի մանուկ որդուն՝ Ստեփանին: Վարազ-Տրդատի կինը կարողացավ փրկել իր դուստր Սպրամին, ապավինելով Խաչենի բերդը, ուր ամուսնացրեց նրան «Ատրներսեհի Սահլի որդւոյ որ է ի Տոհակայ եւ տէր Սիւնեաց, եւ բռնազբօսութեամբ կալեալ էր զգաւառն Գեղամայ եւ որդին իւր Ատրներսեհ հանդիպեցաւ կնոջ զգաստի»[3]:

Ո՞վ է այս Սահլը: Մեզ թվում է, որ նույն քաջածանոթ Սահլ Սմբատյան, Շաքեի տեր: Արդարև, ուրիշ համանուն իշխան հայտնի չէր ո՛չ առաջ, և ո՛չ հետո: Շաքեի տերը միակն էր, որ կրում է այս անունը: Ատրներսեհ Սահլյան ժամանակակից էր Սահլ Սմբատյանին: Այս պարագան ևս նպաստավոր է Ատրներսեհի հոր Սահլի և Սահլ Սմբատյանի նույնության:

Տոհակ աշխարհագրական անունն անծանոթ է այլուստ: Կարելի էր կարծել, որ սխալ ընթերցում է փոխանակ «Սահակայ», այսինքն՝ Սահլի հայ անունն է: Բայց ավելի հավանական է, որ Տոհակ, իրոք, տեղի անուն է:

[1] **Մովսես Խորենացի**, Բ, գլ. 8:

[2] **Մովսես Կաղանկատվացի**, Բ, գլ. 17՝ «զնախնական ազգն Հայկազեանց»:

[3] Նույնը, Գ, գլ. 22:

Այնտեղից Սահլ եկել և բռնի գրավել էր «Գեղամայ գաւառը»: Խոսքը Գեղարքունյաց գավառի մասին չէ: Այս գավառի ժամանակակից իշխանը Սյունյաց Վասակն էր, որ մեռավ 821 թվին, և որին հաջորդեց իր որդի Սահակը († 831): Վայոց Ձորում և բուն Սյունիքում իշխում է նույն միջոցին Վասակի մյուս որդին՝ Փիլիպպոսը: Ապա ուրեմն Սահլ չէր կարող տեր համարվել ո՛չ Գեղարքունիքի, և ո՛չ Սյունիքի: Նրա գրաված «Գեղամայ գաւառը» նույնանիշ է Սոթքի, Սևանա լճի նիստի աջ անկյունը[1]: Սոթք, ավելի ճիշտ Սոդք, անունը պահվել է ցայժմ. այսպես է կոչվում Թարթառի ակունքները Սևանա լճի ավազանից զատող լեռնադաշտակը:

Արդարև, Սոթքումն էր որ Ատրներսեհ, իր ամուսնությունից հետո, շինեց Հանդու բերդը: Այնտեղ էր և Վայկունիք, ուր հաստատեց իր ապարանքը: Բուղայի վայրագության ժամանակ, Ատրներսեհ ևս տուժեց և տարվեց Սամառա մյուս գերված իշխանների հետ: Սպրամ չվհատեց, տոկունությամբ վարեց իշխանությունը և շինեց Նորավանք նույն Սոթից գավառում:

Ատրներսեհ վերադարձավ գերությունից 858 թվին և շուտով մեռավ: Երկու որդի թողեց, Գրիգոր և Աբուսեթ: Գրիգոր շինեց Հավախաղացի բերդը և «յայն կողմն ձգէ զձեռն իւր իշխանութեանն»: Հավախաղաց բերդը, հավանորեն, նույնն է ինչ-որ հետագայում և ցայժմ կոչվում է Հավապտուկ, Մեծիրանց գավառում, որ Խաչենի մի մասն է[2]:

Գրիգոր երկու որդի ունեցավ: Ավագ որդին Աբուալի սպանվեց իր ազգակից Սմբատից 898 թվին, իսկ կրտսերը՝ Սահակ Սևադա, «այր քաջ եւ յաջող», նվաճեց Գարդմանա և Քուստի-Փառնա գավառները և ընկճեց Ձորո գետի «աւազակապետներին»: Կաղանկատվացու ասելով Սահակ բախում է ունեցել Սմբատ թագավորի հետ: Իսկ Հովհաննես Կաթողիկոսից գիտենք, որ Սմբատի որդին Աշոտ Երկաթ ամուսնացավ Սահակի դստեր հետ և սկզբում համերաշխ էին Սահակ և Աշոտ, բայց հետո գժտվեցին գլխավորապես Ուտի և Ձորոփոր գավառների առթիվ: Աշոտ բռնեց Սահակին և իր որդի Գրիգորին և երկուսի աչքերը խարանել տվեց: Հովհաննես Կաթողիկոս հյուր եղավ Սահակին 910 թվին, Կաղանկատվացին գովում է այս իշխանին որպես հովանավոր «գրագիտութեան»:

Սահակի որդիներն են Գրիգոր և Դավիթ: Գրիգոր ունեցավ երկու որդի,

[1] Համեմատել **Ստեփանոս Օրբելյան**, գլ. ծա. «Էր գիւղ մի ի Գեղամ գաւառի ի Սոդից սահմանին»:

[2] **Մովսես Կաղանկատվացի**, Գ, գլ. 22՝ Հավախաղաց կամ Հավքախաղաց, Հանդաբերդի, Խաչենաբերդի և Հաթերքի հետ հիշատակվում է 1182 թ. արձանագրության մեջ որպես կալված Սակռեցի Հասան Վախթանգյան իշխանի: 1289 թվին Հասանի որդի Գրիգոր մեծ իշխան է Ականո, Հանդաբերդո, Սոթից, Շողգահո և Ծար գյուղի: Ավելի ուշ, 1430 թվին, Շանշի որդի Սայտի տեր էր «Փոքր-Սիւնեաց Ականայ Հաթերքոյ, Հանդաբերդոյ եւ ծովակին Գեղամայ մինչեւ Շաղվաքայ»: Վակունիս հիշվում է 1241 թվի արձանագրության մեջ, տե՛ս **Կ. Կոստանյանց**, Վիմական տարեգիր, էջ 34, 130, 172 և 84:

Սևադա Իշխան և Ատրներսեհ: Սևադա Իշխանը՝ չորս որդի, Հովհաննես, Գրիգոր, Ատրներսեհ և Փիլիպպե: Հովհաննես, որ կոչվում էր նաև Սենեքերիմ արքայական թագ կապեց Պարսից թագավորի հաճությամբ, որ տվեց նրան իր հոր թագն ու երիվարը: Հունաց Մագիստրոս Դավիթ ուղարկեց թագ և ծիրանի:

Արցախի Բագրատունի գիծը կներկայանա այսպես.

1 Սահլ
|
2 Ատրներսեհ, կինը՝ Սպրամ
|
3 Գրիգոր, Աբուսեթ
|
4 Սահակ-Սևադա, Աբուալի
|
5 Գրիգոր, Դավիթ
|
6 Սևադա-Իշխան, Ատրներսեհ
|
7 Հովհաննես-Սենեքերիմ, Գրիգոր, Ատրներսեհ, Փիլիպպե

Անանիա կաթողիկոսը, ինչպես առիթ ունեցանք հիշելու, 949 թվին այցելեց Խաչեն: Երկրի իշխանն այդ միջոցին Գրիգորն էր, որն ընդունեց կաթողիկոսին և խնդրեց, որ ներողամտաբար թողնե Գագիկ եպիսկոպոսին իր աթոռի վրա: 958 թվին կաթողիկոսը նորից անցավ այն կողմերը, մտավ նախ Բաղք, կարգավորեց եկեղեցական գործերը և մտադրություն ուներ գնալ Աղվանք, բայց լուր ստացավ Սենեքերիմ իշխանից, թե իսմայելացիք մտել են իր աշխարհը և որ հայրապետի ճանապարհորդությունը վտանգավոր է: Այս իշխանը նույն է ինչ որ հետո կաթողիկոսը կոչում է «Սենեքերիմ որդի Գրիգոր Խաչեան իշխանի»:

Սենեքերիմ, անտարակույս, Հովհաննես-Սենեքերիմն է: Սակայն վերջինս Սևադա իշխանի որդին էր, մինչդեռ Անանիայի հիշած Սենեքերիմը Գրիգորի որդին է: Արդյո՞ք Գրիգոր Սևադա-Իշխանի բուն անունը չէ: Ուրիշ հնար չկա հաշտեցնելու երկու տարակարծ վկայությունները[1]:

---

[1] **Ստեփանոս Օրբելյան**, գլ. խգ, բերում է Տաթևի սահմանների մի վկայագիր Հայոց 355 = 906 թվից, ուր վկաների թվում հիշվում են ի միջի այլոց «մեք Գրիգոր եւ Եսայի եւ Ատրներսեհ Աղուանից իշխանք», այլև «մեք Սահակ Գարդմանայ տէր եւ Աշոտ եւ Վասակ Գնթունի»: Վերջին երկու իշխանները հայտնի են Հովհաննես Կաթողիկոսից, էջ 160 և 171: Գարդմանա, տեր Սահակը, անշուշտ, Սահակ-Սևադան է: Հակառակ Կաղանկատվացու, Միհրական տոհմը չսպառեց բոլորովին Վարազ-Տրդատի սպանությամբ 821 թվին: Բուղայի գերիների մեջ հիշվում է Ներսեհ իշխան Գարիթայանից, որ պետք է կարդալ Գարդմանից: Սահակ-Սևադան է, որ «տիրեաց Գարդմանայ եւ Քուստի-Փառնայ»: Առաջին երեք իշխաններից, Եսային՝ նշանավոր

Հովհաննես-Սենեքերիմ և իր եղբայր Գրիգոր ծանոթ են Ասողիկին: Սրանք են Փառիսոսի թագավորներ Սենեքերիմ և Գրիգոր, որոնց քույրը Կարսի թագավոր Մուշեղի (953-984) կինն էր, Աբասի մայրը[1]: Գագիկ թագավորը, որ գահ բարձրացավ 989 թվին գրավեց շատ բերդեր և գավառներ «ի սահմանացն Վայոց Ձորոյ եւ Խաչենոյ եւ Փառիսոսոյ»[2]: Իսկ Հայոց նծբ = 1003 թվին, Սենեքերիմ և Գրիգոր իշխանների մահվամբ, Գագիկ և Գանձակի Փատլուն ամիրան բաժանեցին նրանց աշխարհը[3]:

Սենեքերիմ և Գրիգոր միաժամանակ չմեռան: Գրիգոր շարունակեց իշխել իր եղբոր մահից հետո և իշխեց իր որդու հետ, որի անունն է Փիլիպպե: Վարդան պատմում է Փատլունի ծագումն և առաջադիմությունը «Փառիսոսի Գրիգոր փառաւոր իշխանի» ժամանակ: Սրա մահից հետո, իր որդին Փիլիպպե հյուր գնաց Փատլունի մոտ, բայց վերջինս նրան կալանավորեց և «առնու ի նմանէ զՇաշուազ եւ զՇօթս»[4]: Շաշվազ կարդալու է Շաղվազ, և Շոթք, թերևս, նույն Սոթքն է:

Անանիա կաթողիկոս անվանում է այս Սենեքերիմին իշխան և ո՛չ թագավոր, ինչպես Ասողիկ: Պետք է կարծել, որ 958 թվին Սենեքերիմ տակավին թագավոր չէր հռչակված: Տարաբախտաբար, հայտնի չէ ստուգորեն, թե ո՞վ էր «թագաւորն Պարսից» և ո՞վ «Յունաց Մագիստրոս Դաւիթ», որ թագ ղրկեցին Աղվանից իշխանին: «Պարսից» բառը, հարկավ, տաճկաց չէ նշանակում, այլ պետք է հասկանալ բուն իմաստով: Հայտնի է, որ Բոյյան (կամ

---

Աբու Մուսան է, Ատրներսեհը՝ Համամի որդին, իսկ Գրիգորը հավանորեն Սահակ-Սևադայի հայրն է:

[1] **Ասողիկ**, Գ, գլ. ժէ:

[2] Անդ, Գ, գլ. Լ:

[3] Անդ, գլ. խը:

[4] **Վարդան**, ծզ. Փատլունի հաջողությունները պատմում է 1048 թվից հետո, ինչ որ շփոթության տեղիք է տալիս: Իրականին ծզ գլուխը շարունակություն է ծբ-ի: Փատլուն զորանալով, ըստ պատմագրի, «զոռ դնէ ընդ Գագկայ թագաւորին Ձորագետոյ եւ ընդ Կիւրիկէի թագաւորին Աղուանից եւ ընդ Բագարատայ թագաւորին Վրաց»: Ո՞վքեր են այս անձերը: Վրաց տեղեկությամբ, (Բրոսսե, Ա, 299), Փատլուն ուժ առնելով սկսեց ասպատակել Հերեթ և Կախեթ: Բագարատ III թագավորը (980-1014) բարկացավ և առաջարկեց Գագիկ Շահնշահին (989-1021) գնալ միասին սանձելու հանդուգն իշխանին: Գնացին և պաշարեցին Շամքոր, և Փատլուն ստիպված խնդրեց խաղաղութիւն: Այստեղից հետևում է, որ Վարդանի հիշած Բագարատ և Գագիկ Ձորագետցին Բագրատ III և Գագիկ Շահնշահն է: Կյուրիկեն հավանորեն Կախեթի իշխան մեծ Կյուրիկեն է (1010-1039): Անցքը պետք է տեղի ունեցած լինի ուրեմն 1010-1011 թվին և ոչ մի կերպ 1048 թվից հետո, երբ Փատլուն մեռած էր շատուոնց: Բագարատ III (1027-1072) ևս ընդհարում ունեցավ Փատլունի հետ Մեծ Կյուրիկեի մահից անմիջապես հետո և դաշնակցությամբ Դավիթ Անհողինի որդու Գագիկի հետ, **Բրոսսե**, Ա, 317: Սակայն, այստեղ հիշված Փատլուն չի կարող վերոհիշյալ անձը լինել, որ մեռել էր 1030 թ., և որովհետև Կախեթի Մեծ Կյուրիկե ևս մեռել էր 1039 թ., ուրեմն անցքը վերաբերում է 1039-1040 թվերին: Վարդան, հավանորեն, ձուլած է Փատլունի և նրա հաջորդի օրով կատարված միանման պատերազմական գործողությունները:

Բոյեկեան) իշխանական տոհմը, որ տիրում էր Պարսկաստանում ազդեցիկ դիրք ստեղծեց Բաղդադի արքունիքում Ահմետ Բոյյան իշխանի օրով այն աստիճան, որ իր որդին Արումանուր Բախտիար խալիֆ հռչակվեց (967-977): Սրան հաջորդեց իր հորեղբոր որդին իքն Խուսրով, այն անձը, որի մասին գովասանքով է խոսում Ասողիկ և հայտնում, որ «թագ եդեալ թագաւոր թագաւորաց կոչեցաւ», այսինքն՝ ամիր-ալ-ումարա կամ խալիֆ (977-982): Այս երկուսից մեկը պետք է լինի ակնարկած «Պարսից թագավորը»: Դավիթ Մագիստրոսի անձնավորությունը ևս անորոշ է: Հարկավ, Հունաց մագիստրոս չի նշանակում հույն մագիստրոս, այլ Հունաց կողմից մագիստրոսության տիտղոս ստացած անձ: Դավիթը վրական Բագրատունիներից է: Մեր նյութին նայող ժամանակամիջոցում միայն մի Դավիթ կա մագիստրոսական տիտղոսով, Ատրներսեհ թագավորի († 923) թոռնորդին: Մյուս թոռնորդին է հռչակավոր Դավիթ Կյուրապաղատ:

**Ատրներսեհ († 923)**




Դժբախտաբար, Դավիթ Մագիստրոսի մասին տեղեկությունները, ներդաշնակ չեն: Մի տեղեկությամբ, Դավիթ Մագիստրոս էրիսթավ էրիսթավաց (այսինքն՝ իշխան իշխանաց) էր և մահացավ 966 (կամ 969) թվին: Մյուս տեղեկությամբ, «Դաւիթ կիւրապաղատ էր եւ դարձաւ մեծ», ուրեմն նույն անձն ինչ որ Դավիթ Կյուրապաղատ († 1000)[1]: Այսպիսով, խնդիր է ծագում, թե նշանավոր կյուրապաղատն Ատրներսեհ թագավորի ո՞ր որդու թոռն էր, Բագարատի, թե Սմբատի: Ավելի հիմ կա Բագարատի թոռն համարելու, քան Սմբատի: Արդարև Դավիթ Կյուրապաղատ հրապարակի վրա էր արդեն 978 թվին, երբ ապստամբ Վարդ Սկլերոսը օգնության դիմեց նրան: Եթե այն Ատրներսեհի որդին լիներ, որը մեռավ 983 թվին, Դավիթ չէր կարող ինքնուրույն դիրք ունենալ 978 թվին, իր հոր կենդանության ժամանակ: Մինչդեռ մյուս Ատրներսեհը մեռավ 961 թվին և երկու որդի ուներ,

[1] **Brosset**, I, 280 և 285: Տարբեր աղբյուրներ չեն, այլ միևնույն հեղինակի գործի տարբեր ձեռագրեր:

Բագարատ, որ մեռավ 966 թ. և Դավիթ, որ հաջորդեց եղբոր 966 թ. (կամ 969 թ. համաձայն կենսագրական տարբեր ցուցումի), սկզբում որպես մագիստրոս, հետագայում նաև կյուրապաղատ: Դավիթ Կյուրապաղատ մեծ հռչակ ունի հայ հեղինակների մոտ և շատ հավանական է, որ այդ բարյացակամ իշխանն էր, որ թագ դրկեց Սենեքերիմին:

Բախտիար զահ բարձրացավ 967 թվին, ուրեմն գրեթե միաժամանակ Դավթի հետ: Այս թվից հետո է, որ Սենեքերիմ թագ կապեց, բայց ե՞րբ, մնում է անորոշ: Հետևապես Անանիա կաթողիկոսի կողմից զանցառություն չէր, որ նրան թագավոր չէ անվանում 958 թվին, ինչպես անվանում է Իշխանիկին: Սենեքերիմ թագավոր հռչակվեց, ինչպես թվում է, միևնույն ժամանակ և միևնույն պայմաններում, ինչ որ իր փեսա Սմբատ Սյունյաց իշխանը: Սա ամուսնացած էր Շահանդուխտի հետ, որ էր դուստր Սևադայի, ուրեմն քույր Սենեքերիմի: Սմբատ տակավին թագավոր չէր 963 թվին, և մեռավ թագավոր 998 թվին: Խաչենի տոհմը չսպառեց Սենեքերիմի եղբոր Գրիգորի որդու՝ Փիլիպպեի սպանությամբ: Ժամանակագրական նկատումները ներում են Փիլիպպեի որդին համարել այն Սևադան, որի դուստրը, որ կոչվում էր նույնպես Շահանդուխտ, հարս գնաց Սյունյաց տուն: Սմբատ թագավորին հաջորդեց իր որդի Վասակը, որ 1026 թվին դեռ կենդանի էր: Սա որդի չուներ, այլ մի դուստր, հռչակավոր Կատրամիտե, որ կին եղավ Գագիկ Շահնշահի: Վասակից հետո իշխանությունն անցավ իր քրոջ որդիներին, Սմբատին և Գրիգորին: Սմբատ թագավոր է հիշվում 1043 թվին: Սրանից հետո էր իր եղբայր Գրիգորը: Ահա այս անձն էր, որ կին առավ Շահանդուխտին: Գրիգոր և Շահանդուխտ անզավակ էին, ուստի հաջորդ ընտրեցին Շահանդուխտի եղբոր Սենեքերիմին, Սևադայի որդուն: Սենեքերիմ և իր երկու որդիները, Գրիգոր և Սմբատ, իշխեցին Սյունիք: Գրիգորի դուստրը Կատա ամուսնացավ Խաչենցի Հասանի հետ, որպեսզի հաջորդե Գրիգորին, բայց Հասան իր կնոջ հետ հեռացավ իր հայրենի Խաչեն 1170 թվին[1]:

Մոնղոլները պաշարեցին 1260 թվին Մարտիրոսաց քաղաքը, այժմյան Մուֆարղին: Նրանց բանակումն էր «Սևադա Խաչենցի, որդի մեծ իշխանին Գրիգորի», որ ընկավ քաջի մահով: Ասել է, թե Խաչենի իշխանական տոհմը չէր սպառել: Խաչենցի Սենեքերիմը, Շահանդուխտի եղբայրը, որ Սյունյաց իշխան դարձավ, ուներ բացի Գրիգորից և Սմբատից, որ իրեն հաջորդեցին, նաև մի երրորդ որդի, Սևադա: Մեզ թվում է, որ այս Սևադայի որդին է Գրիգորը, մոնղոլների դաշնակից Սևադայի հայրը: Սևադա կրում էր ուրեմն իր պապի անունը: Խաչենի գիծը կլրացվի հետևյալ կերպով:

---

[1] **Ստեփանոս Օրբելյան**, գլ. ծթ-կ:

7 Հովհաննես-Սենեքերիմ, Գրիգոր, Ատրներսեհ, Փիլիպպե

8 Փիլիպպե († 1003)

9 Սևադա

10 Սենեքերիմ

11 Գրիգոր (1166), Սմբատ (1166), Սևադա

12 Գրիգոր

13 Սևադա († 1260)

Մատթեոս Ուռհայեցին շփոթել է հայտնապես Խաչենի Փիլիպպեն կամ Փիլիպպոսը մի ուրիշ իշխանի հետ և սխալ ծննդաբանություն կազմել: Կարևոր է պարզել այս երկրորդ Փիլիպպեի ինքնությունը: Սա պատկանում է մի այլ իշխանական տան, որ կապ չունի Խաչենի գծի հետ:

Ուռհայեցին պատմում է, որ Հայոց նժ = 961-962 թվին Անի քաղաքում գումարված ժողովին մասնակցելու հրավիրվեցին Աղվանից Հովհաննես կաթողիկոսը և Աղվանից թագավոր Փիլիպպոսը, «որդին Գոշագգակայ, որդւոյ Վաչագանայ»: Ժողովը նպատակ ուներ որպես թե տալ «զօծումն թագաւորութեանն Աշոտ Գագկայ» (sic): Աշոտ «օծաւ եւ նստաւ ի գահոյս» և ժողովականները «ուրախ լինէին յաղագս քաջութեանն Գագկայ»[1]:

Այս տեղեկությունները շատ խառնակ են: Նախ 961-962 թվին Աղվանից կաթողիկոս Հովհաննես չէր, այլ Դավիթ, որին ձեռնադրեց Անանիա կաթողիկոսը 958 թվին, երբ մեռավ նախորդ Գագիկ կաթողիկոսը: Դավիթ վարեց իր աթոռը վեց տարի, ուրեմն 958-964: Նրա մերձավոր հաջորդների մեջ Հովհաննես անունով կաթողիկոս չկա: Ապա Աշոտ գահ բարձրացավ 953 թվին և դժվար թե իր օծումը հետաձգված էր մինչև 961 թիվը[2]: Աշոտի հետ հիշվում է Գագիկ, որ գահակալեց 989 թ., իր եղբոր Սմբատից հետո: Ակներև է, որ մեր պատմագիրը իրազեկ չէ անցքերին: Հավանական է, որ 961թվի հանդեսը կազմակերպված էր արքայական գահը Երազգավորից Անի տեղափոխելու առթիվ: Մեր նպատակի համար կարևոր է ամեն պարագային, որ այս միջոցին, թե հետո Աղվանից թագավորն էր Փիլիպպոս, որդի Գոշագգակի և թոռն Վաչագանի:

Փիլիպպոս հիշատակվում է նույն պատմագրի մոտ Չմշկիկ կայսրի

---

[1] **Մատթեոս Ուռհայեցի,** գլ. Ե և Զ:

[2] **Սմբատ Սպարապետ,** որ հետևում է Ուռհայեցուն, պահել է 961 թիվը, բայց Աշոտի փոխարեն գրել է Գագիկ:

Հայաստան գալու առթիվ 975 թվին: Կայսրին դիմավորող իշխանների թվում կային «թագաւորն Կապանից Փիլիպպէ և թագաւորն Աղուանից Գուրգէն»[1]: Կապանք Սյունիքի Կապան գավառը չէ, այլ Դերբենդ, ինչպես հեղինակը բացատրում է մի ուրիշ տեղ, ուր խոսելով հայրապետական աթոռի միաժամանակ չորս գահակալ ունենալու մասին՝ Գրիգոր, Թեոդորոս, Բարսեղ և Պողոս, հակադրում է այս քայքայուն վիճակը Աղվանից կաթողիկոսության և հիշում է այս առթիվ Աղվանից վերջին հայրապետները, Հովհաննես, Գեորգ, Հովսեփ, Մարկոս, Ստեփանոս թագավորները, Գագիկ, Դավիթ և Կորիկե, «որ նստէին այժմու ի Լոռէ քաղաք Հայոց», նույնպես այն թագավորները, որ «էին ի Դարբանդ աշխարհին, Վաչական, եւ նրա որդի Գուշակտակ, Փիլիպպէ՝ որդի Գուշակտակին, Սեւադա՝ որդի Փիլիպպէի, Սենեքերիմ՝ որդի Սեւադայի, Գրիգոր՝ որդի Սենեքերիմայ, «որ դեռ եւս կենդանի էր մինչեւ գրէաք զայս մատենագրութիւնս մեր»[2]: Ուրեմն.




Պատմագիրը սխալ է: Վերջին երեք անձերը չեն սերում այս Փիլիպպեից, այլ Խաչենցի Գրիգորի որդի Փիլիպպեից, ինչպես տեսանք վերև:

Առաջին երեքը նույն Վաչագան, Գոշազգակ և Փիլիպպոս անձերն են, որոնք հիշված են 961 թ. ժողովի առթիվ: Գոշազգակ, թե Գուշակտակ, երկուսն էլ այլուստ անծանոթ անուններ են, հավանորեն աղավաղված: Սրանք Դերբենդի թագավորներ չեն: Ուռհայեցին տկար է իր ծննդավայրից հեռու աշխարհների գիտության մեջ: Բավական է հիշել, որ Պարտավ քաղաքը նույնացնում է Փայտակարանին:

Անանիա կաթողիկոսի քանիցս հիշատակած թղթից գիտենք, որ 958 թվի ժողովին ներկա էր ուրիշ իշխանների թվում «Վաչագան Գորոզուաց իշխան»: Սա Ուռհայեցու Վաչագանն է: Իբն-Հավկալի մի քանի գին

[1] **Սմբատ Սպարապետ**, գլ. ժդ:

[2] Նույնը, գլ. ճիզ:

տեղեկությունը պարզում է Վաչագանի ինքնությունը: Արաբ մատենագիրը գիտե Վաշաղիան իբն Մուսի: Տակավին Սեն-Մարտեն[1] գուշակել է, որ Վաշաղիան է Վաչագան անունը, բայց չէր նկատել, որ նրա հայր Մուսի Ուտիացվոց հայտնի իշխան Մովսեսն է:

Աշոտ Երկաթ իր աներոջ Սահակ Սևադայի հետ արշավանք գործեց Ուտիք ընկճելու «զբիրտ ապստամբութիւնն Մովսիսի զոր իւր իսկ կացուցեալ էր զնա իշխան եւ հրամանատար ճուաղաբարոյ ազգացն այնոցիկ Ուտի գաւառի»: Օգնության եկավ քաղավորին նաև մեծ քոր-եպիսկոպոսը, որ ուներ «զմասն Գուգարաց մերձ ի դրունս Ալանաց»: Մով-սես փախավ Սյունյաց Սմբատ իշխանի մոտ: Սա Սյունյաց համանուն քաղավորի հորեղբայրն էր և իր որդու Վասակի հետ հիշված է Անանիայի առաջին ճանապարհորդության, 943 թվին: Մինչ Աշոտ Երկաթ զբաղված էր նվաճելու «խստապարանոց աւազակուտ» ուտիացիներին, Մովսես փորձեց Սյունիքից փախչել գնալ «առ մեծ քորեպիսկոպոսն Ծանարաց», հուսալով նրա օգնությամբ ազատել իր երկիրը: Բայց Երկաթը հաջողեց բռնել նրան և խարանել աչքերը[2]:

Ծանարաց քորեպիսկոպոսը նույնն է ինչ որ Գուգարաց: Պատմագրի աշխարհագրական ծանոթությունը փայլուն չէ: Գուգարաց աշխարհը, ըստ Կեղծ Խորենացու Աշխարհագրության, Հայաստանի 15 աշխարհներից մեկն էր Հայաստանի և Վրաստանի միջև, Կուր գետի աջակողմը Բերդուջ գետից մինչև Ճորոխ: Ծանարք ընկնում է Ալազան գետի ակունքների ձա-խակողմյան լեռները, Գուգարքից հեռու: Այնտեղ տիրող իշխանները կոչվում էին քորեպիսկոպոս: Մովսեսի դիմելը քորեպիսկոպոսին նշանակում է, թերևս, որ Ուտիացվոց իշխանը հողեր ուներ նաև Կուրի մյուս ափին, Կամբեճանի կամ Հերեթի շրջանում:

Մովսեսի անկումով, նրա իշխանությունը չոչնչացավ: Սահակ Սևադան իր որդու Գրիգորի հետ նույնպես ծանր պատիժ կրեց Աշոտ Երկաթից, բայց Գրիգորի որդին ժառանգեց հայրենի իշխանությունը: Մեզ թվում է, որ արաբ մատենագրի Վաշազիանի հայր Մուսե Ուտիացի Մովսեսն է, իր որդին՝ Վաչագան Գորոզուաց իշխանը: Իբն-Հավկալ կոչում է Վաշազիան Իբն Մուսեին իշխան Հարարի: Այսանուն աշխարհագրական վայր հայտնի չէ: Կեղծ Խորենացու Աշխարհագրության համառոտ խմբագրության առաջին հրատարակության մեջ, որ լույս տեսավ Լոնդոն, Վիստոն եղբայրների ջանքով (1), հիշված է Աղվանից գավառների թվում **Խռռռ**, որ նման է **Հարարի**: Արդյո՞ք նույն անունն է: Տեղը հայտնի չէ:

---

[1] **«Mémoires sur l'Arménie»**, I, 231.

[2] **Հովհաննես Կաթողիկոս**, էջ 163-164:

Գորոզուքի դիրքը ևս ծանոթ չէ: Կաղանկատվացին գիտե Գորոզու բերդը և հիշում է հետևյալ առթիվ: Դավոն և Շապուհ անձերը սպանում են Ստեփանոս Աբլ-Ասադ իշխանին, որը կանչել էր Բաբանին, այսինքն՝ հռչակավոր աղանդապետ Բաբեկին, և նրա օգնությամբ հարվածել բաղակացիներին: Սպանիչներն ավերում են քանի մի վայրեր, որոնց թվում և Հակարի: Այնուհետև ըմբոստանում են Բաբանի դեմ և ամրանում «ի բերդն Գորոզու», և բռնանում 12 տարի հետևյալ գավառների վրա, Վերին Վայկունիք, Բերձոր, Սիսական, Հաբանդ, Ամարաս, Պաղկանք, Մխանք, Սոթից գավառ: Աբլ-Ասադի մերձավորները վրեժ են լուծում, սպանելով Դավոնին և Շապուհին: Աբլ-Ասադի քեռորդին «Յիսայի անուանեալն Աբու-Մուսէ» տիրանում է նույն գավառներին: Բաբան գալիս է Ամարաս, խաղաղության կոչ է անում և առաջարկում հնազանդություն: «Ոմանք հնազանդեցան եւ յետոյ դաւեալք անհնազանդ եղին»: Բաբան թողնում է Ռոստոմ անունով մի զորավար և ինքը հեռանում Ատրպատական[1]:

Դավոն և Շապուհ սկսեցին խռովությունները Հայոց 276 թվից երկու տարի հետո, ուրեմն 278 = 829 թ. մայիս - 830 թ. մայիս, իշխեցին 12 տարի, ուրեմն մինչև 841-842 տարին, երբ նրանք սպանվեցին: Նույն տարին որպես թե Բաբան մտավ Ամարաս: Սակայն հայտնի է, որ Բաբան ձերբակալվեց օգոստոս - սեպտեմբեր 837 թվին: Հետևապես կամ 12 տարին է սխալ, կամ պատմագիրը ձուլել է Բաբանին իր որդու Արդ-Ալլայի հետ, որին ձերբակալեց Իսա իբն Յուսուֆ իբն Ստեփանոս, այսինքն՝ Եսայի Աբու-Մուսե: «Ոմանք դաւեալք» ակնարկը վերաբերում է թերևս այս սպանության: Մեր պատմագիրը շատ փափկանկատ է Եսայի Աբու-Մուսեի վերաբերմամբ: Դավոնի և Շապուհի սպանողն էլ ինքն է, բայց պատմագիրը վերագրում է մերձավորներին: «Խաղաղութեան այր է» անվանում Եսային, մինչդեռ սա զոռ պատերազմող էր և պանծացավ այն հերոսական դիմադրությամբ, որ ցույց տվեց Բուղայի հանդեպ և հաղթեց արաբ զորավարին, ինչպես Թովմա Արծրունին պատմում է, քսան և ութ ճակատում, թեև ի վերջո զոհ գնաց պարտյալի նենգության, կալանավորվեց և ղրկվեց Սամառա: Թովման անվանում է նրան Եսայի կամ Ապումուսե երիցու որդի, իշխան Աղվանից: Ստեփանոս Աբլ-Ասադի քեռորդին էր, հոր անունը Հովսեփ էր, իսկ պապինը՝ Ստեփանոս: Կարծում եմ, որ սա մոր կողմից է պապ, այսինքն՝ նույն Աբլ-Ասադ:

Արաբական տեղեկությամբ Եսային Բայլականի իշխան էր: Բայլական, հին Փայտակարանն է, որի գլխավոր քաղաքն արաբական շրջանում կրում էր նույն անունը և գտնվում էր Պարտավից դեպի Երասխ տանող

---

[1] **Մովսես Կաղանկատվացի,** Գ. գլ. 19:

ճանապարհի վրա, հավանորեն Ամարասի շրջանում: Կաղանկատվացու Բաղակացիք (Բաղական-ցիք) նույն Բայլականի բնակիչներն են[1]: Խոռվարար իշխանների՝ Դավոնի և Շապուհի գրաված վայրերից հայտնի են իրենց դիրքով Հաբանդ, որ է Ամարասի շրջանը, այժմյան Քեոնդալան կոչված գետի ավազանը, և Սոթից գավառը, Սևանա լճի արևելյան անկյունը: Այս սահմաններում էր գտնվում և Գորոզու բերդը, մեր հետաքրքրության բուն առարկան: Եթե Սողքի մոտ էր, կարող էր պատկանել Ուտիքի իշխանին: Իսկ եթե Բայլականի մոտերքն էր, պետք է ընդունել, որ Վաշազիան իբն Մուսե ոչ թե Ուտիքի, այլ Բայլականի իշխան էր, և որ Մուսե կապ ունենալու է Աբու-Մուսեի հետ: Աբու-Մուսե նշանակում է բառացի Մուսեի հայր, և իբն-Մուսե՝ Մուսեի որդի: Այս վերջինը, որ Վաշազիան, կամ Վաչագան էր, ուրեմն որդի էր Եսայի Աբու-Մուսեի: Հարցը մթագնում է և մնում երկբայելի, արդյո՞ք Վաչագան, Գոշազգակ, թե Գուշակտակ և Փիլիպպե Կապանից թագավորները Մովսես Ուտիացու սերնդից են, թե Եսայի Աբու-Մուսեի: Մեկը Ուտիքի և մասամբ Հերեթի իշխան է, մյուսը՝ Բայլականի: Եթե կշիռ տանք Ուռհայեցու խոսքին, թե նրանք իշխում էին «ի Դարբանդ աշխարհի», պետք է առավելություն տալ Ուտիքի:

Կարևոր է նաև դիտել, որ Ուտիք մեզ հետաքրքրող ժամանակում կոչվում էր Սևորդյաց աշխարհ և տարածվում էր Գանձակի և Գարդմանի շրջանից մինչև Տաշիր: Հաղբատ և Սանահին վանքերը, ըստ Ասողիկի, գտնվում են Սևորդյաց աշխարհում: Կոստանդին Ծիրանածնի օրով, բյուզանդական արքունիքը ճանաչում էր և պաշտոնական հարաբերություն ուներ մի շարք հայ իշխանությանց հետ, որոնց թվում հիշատակվում են Սյունիք, Խաչեն և Սևորդյաց երեք իշխանություն: Բուղայի շահատակությանց ժամանակ Սևորդյաց իշխան էր Ստեփանոս Կոն, որ մարտիրոսացավ 855 թվին, իսկ Գարդմանի իշխանն էր Կտրիճ, ըստ Հովհաննես Կաթողիկոսի, իսկ ըստ Թովմա Արծրունու՝ Ներսեհ իշխան (Գարիթայանից կարդալ Գարդմանից), որից հետևում է, որ Կտրիճ նույն Ներսեհն է: Ստեփանոս Սևորդին ձերբակալվեց Տուս գյուղում[2], որ է Տավուշ, այժմ, թրքական արտասանությամբ, Թովուզ, Աղստև և Ջեգամ գետակների միջև, համանուն գետակի վրա: Բուն Գարդման կազմում էր Շամքոր գետի վերին հովիտը, ուր ցայժմ Կրամանըք գյուղը պահել է հին անունը թրքական երևույթի տակ: Տեսանք, որ Խաչենցի իշխան Սահակ-Սևադա նվաճեց Գարդման և Փառիսոս: Հավանորեն Ծիրանածնին ծանոթ Սևորդյաց երեք իշխանություններն էին Գարդման, Փառիսոս և Ուտիքի արևմտյան մասը:

---

[1] **Ստեփանոս Օրբելյան**, գլ. լգ, Բաղակաց-ի փոխարեն ունի Բաղասականա, որ զատ է Բայլականից, բայց նրան կից է արևելյան կողմից, ընդգրկելով Երասխի երկու ափերը:

[2] **Հովհաննես Կաթողիկոս**, էջ 71:

Իբն-Հավկալ հիշում է նաև Քաբալա որպես առանձին իշխանություն և անվանում է «ավազակների եւ մուրացիկների որջ»: Քաղաքի բնակիչները մեծ մասամբ մահմեդականներ էին, իսկ գավառի՝ քրիստոնյաներ: Քաբալայի իշխանը կոչվում էր Անբասա ալ-Աիվեր: Առաջին բառը արաբերեն նշանակում է առյուծ, երկրորդը՝ միականի: Քաբալա կամ Կապաղակ խսկապես Շաքեի քաղաքն էր և հին բերդի ավերակների մոտ այժմս էլ կա թրքական մի գյուղ նույն Ղաբալա անունով, Տուրիան գետի և իր Ջուրլա վտակի խառնուրդի մոտ: «Միականի առյուծ» անունը արդյոք թարգմանություն է տեղական որևէ անվան, դժվար է ասել: Հետաքրքրական է, որ Խորենացուն վերագրած Աշխարհագրության համառոտ խմբագրության մեջ, որ հրատարակեցին Վիստոն եղբայրները 1726 թվին (5) Լոնդոն հիշատակված է Աղվանից գավառների թվում նաև Համբասի, որ անտարակույս, նույն Անբասա անունն է: Արդյոք իշխանն էր տվել իր անունը գավառին, թե ընդհակառակը, իշխանը այդպես էր կոչվում գավառի անունով, մնում է անորոշ: Իշխանի ազգությունը ևս մութ է:

Շաքեից հյուսիս, Ալազանի գետի արևելյան կողմը բարձրացող լեռնադաշտակի վրա ապրում էր Ծանարք կոչված ժողովուրդը: Իբն-Հավկալ նշանակում է Սանարիա իշխանությունը Ալանաց դրան և Վրաստանի միջև: Սանարիա նույն Ծանարքն է և իշխանը կրում է քորեպիսկոպոս տիտղոսը, Իբն-Հավկալի և Հովհաննես Կաթողիկոսի համերաշխ վկայությամբ: Ըստ վերջինիս, մեծ քորեպիսկոպոսը «պայազատէր իսկ զմասն Գուգարաց մերձ ի դրունս Ալանաց»[1]: Տեսանք, որ քորեպիսկոպոսն օգնության եկավ Աշոտ Երկաթին 918 թվին և հետո Ուտիացի Մովսես փորձեց փախչել նրա մոտ: Իբն-Հավկալ հաղորդում է, որ քորեպիսկոպոսը կոչվում էր Սենեքերիմ 950 թվի մոտերքը: Հավանական է, որ Աշոտ Երկաթի և Ուտիացի Մովսեսի ընդհարման միջամտող քորեպիսկոպոսը ինքը Սենեքերիմն էր[2]: Անունս վկա է նրա հայ ծագման:

Ծանարների մասին մի ուշագրավ զրույց է պահված Վարդանի մոտ: Մի քանի քաղդեացի գալիս են Գարդման և խնդրում Հերակլի նվիրած խաչից մի բեկոր: Նրանց խնդիրը կատարվում է: Սակայն վախենալով Բաղդադի ամիրապետից թողնում են Գարդման և հեռանում «յոտն Կովկասու» և տիրում այնտեղի երկրներին: Նրանցից մեկը թագավորում է և խնամենանում Չոր գետի թագավորի հետ: Զրույցիս հեղինակը կարծում է, որ նրանք Ծանարք կոչվեցին «զի անդ ծանեան զտեղի բնակութեան իւրեանց»:

---

[1] **Հովհաննես Կաթողիկոս**, էջ 163-164:

[2] Նաև **Մառուռի**, I, 233:

Գարդմանի իշխանը կոչեց նրանց իշխանին քորեպիսկոպոս «ըստ լեզուին վրաց (իմա՛ հունաց, դավանաբանական տեսակետից)[1]:

Վերջին մեկնությունները արժեք չունին, բայց Ծանարքի կապը Գարդմանի հետ արժանի է ուշադրության: Հերակլի նվիրած խաչի մասը Հացունյաց խաչն է, որի պատմությունը հայտնի է (6): Նվերն ստացավ Սյունյաց իշխանուհի Բյուրեղ: Գարդմանն, ինչպես երևում է, բաժին էր ստացել այդ սրբությունից, բայց ե՞րբ և ի՞նչպես, զրույցը լռում է այդ մասին: Ծանարք ևս անբաժին չեն մնացել: Այս վերջին պարագան, իհարկե, ուրիշ բան չէ նշանակում, քան որ Ծանարքի առաջին քրիստոնյա քարոզը եկել է Գարդմանից: Քաղդեացիների Գարդման գալը կարող է արձագանք լինել մի հին դեպքի, որ հիշատակվում է Կաղանկատվացու մոտ: Եղիա կաթողիկոսի օրով Պարտավում գումարված ժողովի անդամներից մեկը պատկանում էր Հակոբիկ համայնքին, որ եկել հաստատվել էին Կամբեճան, «ի Մազիանացւոցն պարսից Յակոբիկ հաւատով, որք եկեալ ի Կամբիճան բնակեցան»[2]: Մազիանացիք արաբական ցեղ էին Կարմիր ծովի ափին, Սինայի մոտ, և կապ չունեն Պարսից հետ և ոչ Հակոբիկ համայնքի հետ: Խոսքը ասորական Հակոբիկների մասին է, որ թերևս խուսափելով նեստորական հալածանքներից, գաղթել էին Կամբիճան:

Քրիստոնեացած Ծանարքի հոգևոր տերերը համարվել են եպիսկոպոսներ կամ քորեպիսկոպոսներ Գարդմանի աթոռի և պահել են այդ կոչումը անգամ, երբ հոգևոր տեսչությունը տեղի է տվել զուտ աշխարհիկ և քաղաքական իշխանության: Երկիրն էլ Մայր աթոռ Գարդմանի անունով կոչվել է Գարդման: Այս է պատճառը, որ Ծանարաց երկիրը հայտնի է վրաց մոտ Գարդաբան անունով: Գարդաբան վրական հնչյուն է հայ Գարդմանի և գործ է ածվում կրկնակի իմաստով, նշանակելով բուն Գարդման[3] և Ծանարաց աշխարհ:

Առաջին քորեպիսկոպոսն էր Դաչի, որ ընտրվեց գարդաբանցիների կողմից 827 թվին և որին հաջորդեցին Սամուել և Գաբրիել մինչև 881 թիվը: Այնուհետև ոմն Գաբլուց, «Թիփլիսի Սահակ ամիրայի ազգական և Աշոտ I թագավորի հորեղբորորդին»[4], գրավեց Գարդաբան:

---

[1] **Վարդան**, գլ. **ծգ**, էջ 101:

[2] **Մովսես Կաղանկատվացի**, Գ, գլ. 10:

[3] Ավելի ճիշտ, Գարդմանի արևմտյան մասը, որ հարում էր Բերդուջ գետին: Գարդմանի Սևորդյաց իշխանությունը տարածվում էր մինչև այս գետի հովիտը: Վրաց հասկացողությունը Գարդմանի մասին վերաբերում է այն շրջանին, երբ բուն Գարդմանը և նրա արևելյան մասը անցել էր Խաչենի և հետագայում Գանձակի տեր Փատլունին, ուստի և վրաց Գարդաբանը ընդգրկում է միմիայն մեծ Գարդմանի արևմտյան մասերը:

[4] Շփոթ տեղեկություն է: Սահակ ամիրան մահմեդական էր, որի ազգակցությունը

Սրանից հետո՝ Փադլա Արևմանելի եղավ քորեպիսկոպոս: Այս անձի, ինչպես և իր նախորդի ծագումն անհայտ է: Պարտավի 707 թվի ժողովին ներկա էր Աղվանից իշխաններից Թեոդորոս Վատամ յԱրևմանյան[1]. իշխանությունը անցավ Կորիկեի (893-918) և ապա իր որդուն Փադլային (918-929): Սրանց ծագումը նույնպես անորոշ է:

Կորիկե II-ի օրով (929-976) Գարդաբանն ըմբոստացավ: Սա Կախեթի իշխան էր իսկապես, ինչպես և իր հաջորդն և որդին Դավիթ (976-1010), որ կոչվում է «քորեպիսկոպոս Կախեթի»: Կորիկե III կամ Մեծ (1010-1039) ընդհարվեց Վրաստանի թագավոր Բագարատի հետ, որ խլեց նրանից Հերեթ և Կախեթ և, ինչպես թվում է, նորից տիրացավ իր գահին Բագարատի մահից (1014) հետո: Սա թագավոր էր Ռանի, այսինքն՝ Առանի և Կախեթի, երբ սպանվեց 1039 թվին: Այս Կորիկեի քույրը Դավիթ Անհողինի կինն էր: Կորիկեի մահից հետո, Անհողինի որդին Գագիկ ժառանգեց իր քեռու իշխանությունը:

Որքան ստույգ են «Վրաց տարեգրքի» այս տեղեկությունները, դժվար է կշռել[2]: Թվում է, թե այստեղ շփոթություն կա Կախեթի և Գարդաբանի մեջ: Եթե ոչ բոլորը գեթ մի քանիսը իրապես Կախեթի իշխաններ էին և հաջողել էին տիրանալ նաև Գարդաբանին և նրա իշխանական տիտղոսին, քորեպիսկոպոսության: Արդարև, տեսանք, որ արաբական անսխալ վկայությամբ, Ծանարաց, այսինքն՝ Գարդաբանի քորեպիսկոպոսն էր 950 թվականներին ոմն Սենեքերիմ, մինչդեռ այս անունը հայտնի չէ վրաց աղբյուրին և նրա փոխարեն Գարդաբանի իշխան է նույն միջոցին Կյուրիկե II (929-976): Պետք է կարծել, որ վերջինս իրապես Կախեթի իշխան էր և գրավել էր կամ իր նախորդից ժառանգել էր նաև Գարդաբանը: Կյուրիկեի օրով Գարդաբանն ապստամբեց և հավանորեն վերականգնեց իր անկախությունը: Ապստամբը, հետևապես, նույն Սենեքերիմը պետք է լիներ, 950 թվի քորեպիսկոպոսը:

Անանիա կաթողիկոսից հայտնի է, որ 958 թվի ժողովի անդամների մեջ կար մի իշխան, որ կոչվում է Գուրգեն Արևելից իշխան և որի ինքնությունը մինչև այժմ պարզված չէ: Մեզ թվում է, որ այս Գուրգենն ոչ այլ ոք է, եթե ոչ Կյուրիկե II, Կախեթի ժամանակակից իշխանը: «Արեւելից իշխան», խորք

---

Գաբլուցի հետ նույնական է, եթե իրոք, Գաբլուց հայ առաջին Բագրատունի թագավորի հորեղբորորդին է: Աշոտ I-ի հորեղբայրները հայտնի են, բայց Գաբլուց անունով հորեղբորորդի անծանոթ է:

[1] Մովսես Կաղանկատվացու այս հատվածը պակասում է տպագրի մեջ և հրատարակված է **Սամուել Երեցի** «Քրոնիկոն»-ի (5) հավելվածում, էջ 286:

[2] Սամուել և Գաբրիել անունները պատկան են քորեպիսկոպոսի և ավելի պատմական են թվում, քան Դաչի և մանավանդ Փադլա: Վերջին անունս, որ նույն է ինչ որ Փադլուն, երևան է գալիս առաջին անգամ տասներորդ դարու վերջերին:

որակում չէ: Հովհաննես Կաթողիկոսը Շաքեի Ատրներսեհ թագավորին կոչում է իշխան «Արեւելից հիւսիսոյ Կովկասու»: Նույն իրավունքով և Անանիա կարող էր Շաքեի հարևան Կախեթի թագավորին համարել «Արեւելից»:

Կորիկեի - Գուրգենի մասնակցությունն 958 թվի ժողովին մատնում է նրա հայ ազգությունը: Կարծում ենք, որ Կախեթի Կյուրիկե I (893-918) սկսած տոհմը հայ Բագրատունի ծագում ունի: Կորիկե III-ի ժառանգության անցնելը հայ Դավիթ Անհողինի որդուն Գագիկին միանգամայն բնական է: Այսպիսով, Շաքեի Ատրներսեհը և իր որդի Իշխանակը, Ծանարք - Գարդաբանի Սենեքերիմը, այլև Կախեթի Կորիկե - Գուրգենը հայ իշխաններ էին: Հայ ազդեցության զորացումը այս երկրների մեջ նոր թափ ստացավ մանավանդ Սմբատ I-ի թագավորության ժամանակ: Հովհաննես Կաթողիկոսը չէ չափազանցում, երբ գծում է Սմբատի տերության սահմանները, նրանց մեջ առնելով Գուգարք, Ծանարք մինչև Ալանաց Դուռն: Բերենք իր խոսքերը. «եւ այսպէս ձգեալ անճցուցանէր զշաւիղ տէրութեան իւրոյ յարեւմտից հիւսիսոյ մինչեւ ցԿարնոյ քաղաք եւ անդր եւս, քան զԿղարջս, քերեալ մինչեւ առ ափն Ծովուն մեծի և մինչեւ ցսահման Եգերաւոց. եւ մինչեւ ցստորոտ մեծի լերինն Կովկասու, **ցԳուգարացիս եւ զԾանարս մինչեւ զԴուռն Ալանաց,** առեալ եւս յինքն և զամրոց դրան պահակի նոցա: Եւ անտի ի հարաւակողմն կոյս զԿուր գետով մինչեւ ի քաղաքն Տփղիս եւ զՈւտի գաւառ մինչեւ ի քաղաքն Հունարակերտ եւ մինչեւ ի Տուս եւ ի Շամքոր»[1]: Իշխանակը, տեսանք, որ իր մոր Դինարի շնորհիվ, ուրացավ հայրենի հավատը: Բայց պետք չէ կարծել, որ հայ դավանությունը վերացավ անհետ այս երկիրներից: Արտակարգորեն ուշագրավ է հույն 1673 թվին գրած մի ձեռագրի հետևյալ նկատողությունը, որ ավելորդ չենք համարում բերել ամբողջապես *εἶναι οἱ Ἰακωβῖται ὁποῦ ὀνομάζονται Χεψοῦροι, ὁμοίως εἶναι καὶ ἄλλη φυλὴ ὁποῦ λέγεται Τοῦχοι, καὶ εἶναι χριστιανοὶ καθολικοί. Εἶναι καὶ ἄλλη φυλὴ ὁποῦ λέγονται Δίδο καὶ ἑτέρα ὁποῦ λέγεται Καιστή* այսինքն, «Կան Հակոբիկներ, ուր նրանք կոչվում են Խևսուրք, կա նաև մի ուրիշ ցեղ, որ կոչվում է Թուշք, որոնք կաթուղիկյա քրիստոնյայք են: Հայտնի է մի այլ ցեղ, որ կոչվում է Դիդոյք և մի ուրիշը, որի անունն է Քիսաք»[2]:

Այստեղ թված ցեղերը, Խևսուրք, Թուշք, Դիդոյք և Քիսաք, ծանոթ են և ցայժմ ապրում են հին Ծանարաց աշխարհի սահմաններում: Խևսուրները կոչված են Հակոբիկ: Այսպես է կոչվում հակաճեստորական և հակաքաղկեդոնական Ասորական եկեղեցին, որ գաղափարակից է Հայ եկեղեցուն

[1] **Հովհաննես Կաթողիկոս,** էջ 89-90:
[2] **Վ. Բենեշևիչ,** «Օպիսանիե գրեչեսկիխ ռուկոպիսեյ» (ռուսերեն), Ա, 449:

դավանաբանական խնդիրներում: Անշուշտ, խոսքը ութերորդ դարու սկզբին Կամբեճան գաղթած հակոբիկների մասին չէ: Եթե անգամ նրանց մի հատվածը տեղափոխված լինի Ծանարք, ապաստան գտած Դաղստանի լեռներում, դժվար թե այդպիսի մի չնչին բեկոր կարենար իր ինքնակացությունը անխախտ պահել մինչև XVII դարը: Կարծում ենք անհայտ գրիչը հակոբիկ ասելով ակնարկում է հավանորեն Հայոց եկեղեցուն: Իսկ այս՝ այլ բան չէ նշանակում, քան հին հայ գաղթականությունը ձուլվել է տեղական ցեղերի հետ, մասնավորապես խևսուրների հետ, բայց պահել իր կրոնական ինքնությունը:

* * *

Այսպես Բագրատունյաց տոհմային ծառը, վերընձյուղելով հինավուրց արմատից, ծաղկեց և զարգացավ ամբողջ IX դարու ընթացքում, և փարթամ ոստերով փռվեց երեք երկիրների վրա, Հայք, Վիրք և Աղվանք:

Հարավում Բագրատունի աշխարհաշեններր չկարողացան թևակոխել Տավրոսյան շղթան: Ամիդում հաստատված Շայբանի մուսուլման իշխանական տունը կանգնեցրեց նրանց առաջխաղացությունը: Արևելքից մրցորդ հանդիսացան Արծրունի իշխանները և տիրացան Վասպուրականին, սահման դնելով Բագրատունիների ծավալուն ազդեցության: Սյունյաց իշխանական տունը ևս վերածնված՝ հակամետ չէր ասպարեզը թողնել Շիրակի տերերին: Բագրատունիների թափը բնականորեն ուղղվեց դեպի հյուսիս, Վրաստան և Աղվանք: Նրանց շարժումը դյուրացրեց այն հանգամանքը, որ ամուր կռվան ունեին Սպերում հնուց ի վեր և նորը ձեռք բերին հարևան Տայքում: Այստեղից, որպես մի անառիկ ամրությունից, Բագրատունյաց զորությունը ծավալվեց և ողողեց ամբողջ վրական երկիրները մինչև Կովկասյան շղթան: Մի դար աշխարհավաք գործունեությունը նրանց ձեռքը տվեց Մոկաց աշխարհից և Տարոնից մինչև Ծանարք և Ափխազից ու Կարինից մինչև Շաքե:

Դեպի Վրաստան պարզված ճյուղը չհապաղեց անցնել կրոնական խտրության կամուրջը և ապազգայնացավ, դառնալով վրական ազգային հարստություն: Վրաց ազդեցությամբ Աղվանից ճյուղը ևս շրջեց իր երեսը նույն ուղիով դեպի ապազգայնացում:

Բնական երևույթ: Երկու երկիրներն իրենց սեփական ժողովուրդն ունեին, լեզուն ու բարքերը և ինչպես որ պարթև իշխանները հայացան հայ միջավայրում, այնպես էլ հայ Բագրատունիները համակերպվելով պետք է դառնային վրացի վրական շրջանում և աղվան՝ աղվանականում:

Սակայն, գլխավոր գործոնը հայ Բագրատունիների օտարացման Վրաստանում և Աղվանքում որոնելու է բյուզանդական քաղաքականության

մեջ: Կայսրերն էին, որ իրենց մեքենայությամբ խափանեցին երեք դրացի երկիրների քաղաքական հավաքումը Բագրատունյաց տոհմի ղեկավարության և հովանու տակ, նախ կրոնական խտրոցով, ապա և քաղաքական, անջատելով հայերից վրացիներին և աղվաններին և այդպիսով տապալեցին Բագրատունյաց ջանքերը՝ ստեղծելու միահեծան պետություն երեք երկիրներից:

Հայտնի է, որ Բյուզանդիոնը վաղուց բարեկամական հարաբերություններ էր մշակել կովկասյան լեռնականների, և նրանցից հյուսիս հաստատված խազարների և նման անհանգիստ ցեղերի հետ: Հարկավոր դեպքում դրդում էր նրանց սուրալ դեպի արաբական երկիրները և իրենց ասպատակություններով ջլատել թշնամու ուժերը:

Բագրատունյաց դարում կայսրերի ազդեցությունը հյուսիսաբնակ ցեղերի վրա ավելի զորացավ: Երբ նրանք համոզվեցին, որ անճարակ են Եփրատի ափերին հրամայական դիրք բռնել հանդեպ արաբների, և ընդհակառակը շնորհիվ արաբական սահմանների զինվորական կուռ կազմակերպության, ոչ միայն բյուզանդական փորձերն էին հետ մղվում, այլև հաճախ արաբներն իրենք էին նախահարձակ լինում և սրի, ավերածության ու կողոպուտի ենթարկում բյուզանդական հողերը, կայսրերը հետամուտ եղան ամուր ոտ դնել Սև ծովի արևելյան եզերքին, հենվելով Կովկասյան շղթային և լեռնականներին:

Այս է պատճառը, որ ափխազները հանկարծ երևան են գալիս քաղաքական ասպարեզում որպես առաջնակարգ ուժ: Ամենից առաջ նրանք կազմակերպվեցին և գրավեցին ծովափնյա հողերը մինչև Տրապիզոնի շրջանը, վերականգնելով նախնի լազական պետությունը: Իրապես ափխազները ենթակա էին բյուզանդական գերիշխանության:

Դարձյալ նույն Բյուզանդիայի տեսանելի թե անտես աջն էր, որ նպաստեց Տայքի Բագրատունի կյուրապաղատության առաջանալուն և խրախուսեց նրա մեկուսացումը Հայաստանից: Այս քաղաքագիտության անմիջական արդյունքն էր, որ արաբները չկարողացան մոտենալ Սև ծովի ափերին կամ Ճորոխի հովտին և ոչ արմատ ձգել Ափխազիա:

Մյուս կողմից, կայսերական ազդեցությունը հեռու մնաց Հայաստանից: Արաբ-բյուզանդական հակամարտը ծնավ համապատասխան տրամադրություններ. Բագրատունիք Հայաստանում անպայման թեքված էին արաբների կողմը առավելապես, մինչ Տայքում նրանք համակիր էին Բյուզանդիային: Նույն քաղաքական թեքումն ուներ և Ափխազյան իշխանությունը: Շահերի այս ներհակությունը սաստկացավ, ստանալով ազգային և կրոնական գունավորում, ճեղքեց Բագրատունյաց տոհմը, բաժանելով միմյանցից նրա հատվածների քաղաքական ուղիները:

Կրոն և եկեղեցի բյուզանդական քաղաքականության մեջ հետին գործոններից չեն: Աշխարհակալ ծրագիրներ առաջ վարելիս, նա բնավ չի անտեսել հենարան գտնել կրոնական և դավանաբանական համերաշխության մեջ: Փորձության մատնված եկեղեցիները հաճախ ընկճվել են, խոնարհել կայսերական հարկադրանքի առջև և հարմարվել տիրող քաղաքական կացության:

Ճշմարիտ է, եկեղեցին բարոյական խոշոր հաստատություն է, որի պատմությունը և կյանքն իր սեփական անիվներն ունին, բայց անուրանալի է, որ նրանց պտույտները կատարվել են գրեթե միշտ քաղաքական ելևէջների շրջանակի մեջ: Հայ-վրական և հայ-բյուզանդական եկեղեցական հարաբերությունները, նրանց բեկումները և վերջնական դասավորումը, անկախ տեղական բովանդակությունից, դավանաբանական, վարչական և ազգային խթաններից վերջին հաշվով շիտակ անդրադարձումներ են երկու հարևան մեծ պետությունների մրցության և նրանց քաղաքական գերակշիռ ազդեցության:

Հայ եկեղեցու ուրույնությունը պարտական ենք Պարսից պետական քաղաքականության, որ ձգտում էր անջատել հայերին քրիստոնյա Բյուզանդիայից, խրամատել հայ և բյուզանդական, և ընդհանրապես արևելյան և արևմտյան քրիստոնեությունը: Երբ VI դարում բյուզանդական զորքերը մտան Հայաստան և 591 թվին դաշնագրով մեր երկրի մեծագույն մասը անցավ քրիստոնյա կայսեր, հայ եկեղեցականությունը ցնցվեց և հակամետ էր ընդհանուր գետին գտնել արևմտյան մեծ քրիստոնեության հետ:

Վրացիք ավելի վճռական գտնվեցին և օգտվեցին առիթից խզելու իրենց կախումը Հայ եկեղեցուց և կապվելու բյուզանդական եկեղեցուն: Քիչ հետո, ինչպես «Վրաց տարեգիրք»-ն է հայտնում, Հերակլ կայսրը մկրտեց Գարդաբանի, իմա Գարդմանի, իշխանին: Խոսքը, անշուշտ, վերամկրտության մասին է քաղքեդոնական դրոշմով: Գարդմանը վաղուց քրիստոնյա էր և պետք չուներ մկրտության: Եթե հայերը պահ մի Հերակլի և Կոստանդինի առաջ խոնարհելուց հետո, շարունակեցին տատամսել և երկբայելի դիրք բռնել, պատճառն այն էր, որ նոր ուժ էր երևան եկել հանձին արաբների: Արևելքի և արևմուտքի զինական մրցությունը Հայաստանի շուրջը նորից արծարծվեց և հայտնի չէր, թե որ կողմին է ընծայելու բախտը իր վերջին ժպիտը:

Ութերորդ դարու սկիզբը քաշվեց մրցությունը քաղաքական հորիզոնից և այլևս կասկած չկար, որ Հայաստանի մեծագույն բաժինը մնալու է արաբական իշխանության տակ: Հիշամ խալիֆայի հրամանով 724 թվին կազմեցին պաշտոնական աշխարհագիր, այսինքն՝ վիճակագրություն Հայաստանի, երկրի վարչական ձևակերպումը հաստատելու համար:

Այդ նույն ատեն էր, 726 թվին, երբ Հովհան Օձնեցի կաթողիկոսը գումարեց Մանազկերտի հայտնի ժողովը և վերջ դրավ երկարատև վարանումին, թոթափեց ընդմիշտ բյուզանդական եկեղեցու հավակնությունն ու քաղկեդոնական համակերպության խմորը և վերահաստատեց Հայ եկեղեցին իր հինավուրց հունի մեջ: Աշոտ պատրիկն արդեն հրապարակի վրա էր, նա որ 732 թվին նշանակվեց իշխան արաբների կողմից, հռչակավոր Աշոտ Կույրը, Բագրատունյաց վերածնունդի հայրը: Հայ քաղաքականությունը թեքվում էր արաբների կողմը կամավ, թե ակամա: Եկեղեցին շտապեց ճշտել իր դիրքը նոր կացության հանդեպ: Մանազկերտի ժողովը երկրի տրամադրության անխաբ հայտարարն էր և այս մտքով արժեքավոր ոչ միայն եկեղեցական, այլև քաղաքական պատմության տեսակետից:

Վրաց եկեղեցու վիճակը այնքան էլ պարզ չէ: Յոթներորդ դարու վերջերից ընդհատվում է վրաց կաթողիկոսների շարքը երկար ժամանակով: Սակայն, անկասկած է, որ Վրաստանը, ինչպես և Բյուզանդական Հայաստանը մնացին փարած պետական դավանության: Արաբական ազդեցությունը երբեք չթանձրացավ Տայքի և Կղարջքի շրջանում, իսկ Ափխազական երկիրները մնացին ազատ: Ինչ և լիներ այս կողմերում եկեղեցու վիճակը, կարելի էր նախատեսել, որ պիտի կլանվեր կայսերական եկեղեցու կողմից, մանավանդ այն օրից, երբ Բյուզանդիան սկսեց ծանրանալ այս շրջանի վրա և ստեղծեց կյուրապաղատական իշխանություն:

IX դարում Ճորոխի հովիտն արդեն նվաճված էր քաղկեդոնական եկեղեցու կողմից: Կրոնափոխության առաջին հետևանքն եղավ ազգափոխություն: Դավանությունն էր ազգության հատկանիշը, և քաղկեդոնիկ հայը համարվում էր հոռոմ, վրացի, բայց ոչ հայ: Երբ Բագրատունիները հանձին Վասակի մտան և հաստատվեցին Տայք և Կղարջք, երկրի բնիկ ազգագրական պատկերը փոխված էր կրոնական գետնի վրա: Նոր իշխանական տունը համակերպվելով տեղական միջավայրին, նույն ուղիով ընթացավ, մանավանդ որ կենդրոնն էր ընտրել Արտանուջ, վրական շրջանը: Շուտով դարձավ վրական ազգային հարստություն:

Այս հանգամանքով Բագրատունյաց տան միությունը ջլատվեց և նրանց քաղաքական հղացումները կանգ առան կես ճանապարհին:

Բագրատունյաց գործունեության դաշտն էր Հայաստանն արաբական լայնարձակ մտքով, այսինքն՝ ամբողջ Կովկասը, որի աշխարհագրական և քաղաքական կենտրոնն էր իրապես Շիրակը, իշխանական նոր ոստանը: Այստեղից բխած կամ ներշնչված ջանքերը տանում էին դեպի մի հոյակապ կառուցում, որ է՝ հավաքել, խմբել կովկասյան բոլոր ցեղերը մի և հանուր քաղաքական հարկի տակ, ներդաշնակել նրանց կյանքն ու գոր-

ծունեությունը համագործակցության և համերաշխության գետնի վրա, Բագրատունի ծառի հովանու ներքև:

Արևելքի բոլոր պետությունները միշտ հարստենական (դինաստիկ) են եղել, ոչ միայն Իրանում, այլև Ասորեստան-Բաբելոնում: Բազմացեղ և բազմալեզու ժողովուրդները պետական օղակով շաղկապելու ուրիշ միջոց չի գտել հին պատմությունը: Բագրատունյաց ձգտումները եզակի երևույթ չէին: Նրանց ժամանակ նման տենչանքով տոգորված էին և Տահիրյանք, Սաֆֆարյանք և Սամանյանք, որոնք IX-XI դարերի ընթացքին գուն գործեցին վերականգնել Իրանի միությունը համաձայն նրա պատմական ավանդություններին:

Բագրատունիք հաջողեցին իրենց ծրագիրը մինչև մի որոշ աստիճան: Բավական է վերհիշել «Վրաց տարեգրքի» զրույցը, որ Թորգոմի ութ որդիները, գլուխ ունենալով Հայոսին, կազմում էին մի ընտանիք, որ նրանք բոլորը խոսում էին մի լեզու և այդ լեզուն հայերեն էր:

Եթե չենք ուզում արհամարհել այս զրույցները, որպես անարժեք և մտացածին առասպելներ, ապա պետք է ընդունենք, որ նրանք պատմական հայտնի շրջանի ոչ միայն գաղափարական որոնումների, այլև իրական հասումների արձագանքն են:

Այդ շրջանը Բագրատունյաց դարն է: Բագրատունի կորովի գործիչներն էին, որ հարթեցին, պատրաստեցին այն հողը, որի վրա իրավ կարող էին բողբոջել կովկասյան եղբայրակցության սերմերը և նրանց ձայնատու և գաղափարախոս զրույցները:

Սակայն, կրոնական և ֆեոդալական խրամատները, որ ինքնին բարեբաստիկ չեն պետական խոշոր կազմակերպությանց, դառնում են որոշ պայմաններում պայթուցիկ նյութ ամեն մի հավաքարար գործի համար: Բյուզանդ և արաբ հոշոտիչ քաղաքականությունը բորբոքեց կրքերը, խրախուսեց ինքնիշխանության անջատիչ տենչերը և ցրեց դարավոր ճիգերի արդյունքը, խափանելով գլուխ բերել քաղաքական մեծ շենքը: Այն թագերը և կամ կիսաթագերը, որ ամիրապետները բաշխում էին Բագրատունի, թե այլ իշխաններին և կայսրերն ողջունում, իրապես այլ խորհուրդ չունեին, քան արգելել, խանգարել իսկական թագի երևումը: Թագերը դարձան անջատ ուղիների գլխաքարեր:

Բագրատունյաց փորձը՝ ընդգրկել համայն Կովկասը, ինչպես մի մեծ ընտանիք, մի քաղաքական կենակցության շաղկապի մեջ, ներկայանում է մեզ որպես մի խիզախում՝ գաղափարական լայնությամբ անօրինակ միջնադարյան նեղսիրտ մթնոլորտում և կազմում է այս նշանավոր տոհմի պատմական փառքը:

կողմնակալ է ներկայանում Ա. Վասիլևի աշխատությունը (տե՛ս **А. Васильев**, Происхождение императора Василия Македонянина, "Византийский временник", т. XII, вып. 1-4, СПб., 1906, стр. 148-165: Տե՛ս նաև **G. Ostrogorsky,** Histoire de L'Etat Byzantin, Paris, 1956 և այլն): – էջ 438:

11. Բացի նշվածներից, Ն. Ադոնցը Վասիլ I կայսեր գործունեության վերաբերյալ հրապարակել է նաև այլ աշխատություններ [«Nicéphore et L'origine de Basil I», տե՛ս «Byzantion», Bruxelles, 1933, t. VIII, p. 203-212 (Հ. Գրեգուարի հեղինակակցությամբ). «La portée historique de L'Oraison funebre de Basile I par son fils Léon VI le Sage», «Byzantion», 1933, t. VIII, fasc. 2, p. 501-513]: Պատմաբանի արխիվի նյութերի հետազոտությունից պարզվում է, որ նա ցանկացել է առանձին ուսումնասիրություն նվիրել նաև Վասիլ I-ի արքայական ընտանիքին: «Հայ-Մակեդոնական հարստության պատմությունը» խորագիրը կրող հայերեն ձեռագիր աշխատությունից պահպանվել է շուրջ 70 էջ: Այստեղ կանոնավոր շարադրանքով (էջ 28-53, 59-64) ներկայացված է «Վասիլ Հայկազն» գլուխը, մնացածները անկանոն են, թափված են բազմաթիվ էջեր (1-27, 54-58, 65-74 և այլն, տե՛ս պահարան 1, գզրոց Դ, թղթածրար 3): – էջ 438:

## ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ՓԱՌՔԸ
(էջ 439)

Գրված է 1928-1929 թթ. Փարիզում, լիովին վերակառուցված ու վերաշարադրված 1930-ական թվականների վերջերին Բրյուսելում: Առաջին անգամ տպագրվել է «Հայրենիք» ամսագրում (1928, 7-րդ տարի, № 1, էջ 61-70, № 2, էջ 47-55: 1929, № 3, էջ 78-89, № 4, էջ 60-69, № 5, էջ 147-156, № 6, էջ 79-88): Երկրորդ անգամ լույս է տեսել «Պատմական ուսումնասիրություններ» ժողովածուում (էջ 49-156), իսկ երրորդ անգամ՝ Կահիրեի «Հուսաբեր» օրաթերթում (1963, 9, 10, 11, 12, 13, 14, 16, 17, 18, 19, 20, 21, 23, 24, 25, 26, 27, 28, 30, 31 դեկտեմբերի, № 214-233: 1964, 2, 3, 4, 7, 8, 9, 10, 11,13, 14, 15, 16, 17, 18, 20, 21, 22, 23, 24, 25, 27, 28, 29, 30, 31 հունվարի; 1, 3, 4, 5, 6 փետրվարի, № 234-263): Արտատպվում է 2-րդ հրատարակությունից:

1. Ակնարկում է 774-775 թթ. հակաարաբական ապստամբությունը: – էջ 439:

2. Հայաստանի արաբական ամիրայությունների և արաբ գաղթականության մասին հատկապես արժեքավոր է Ա. Տեր-Ղևոնդյանի ուսումնասիրությունը (տե՛ս **Ա. Տեր-Ղևոնդյան,** Արաբական ամիրայությունները Բագրատունյաց Հայաստանում, Երևան, 1965): – էջ 447:

3. Նկատի ունի Մովսես Խորենացուն: – էջ 493:

4. Վրաց Բագրատունիների ծագման ու հարակից հարցերի մասին տե՛ս նաև՝ **Ա. Սարուխան,** Բագրատունյաց արքայական հարստությունը Վրաստանում, «Հանդես ամսօրյա», 1939, № 7-12; **C. Toumanoff,** The Bagratids of Iberia from the eigth to eleventh century, «Le Muséon», Louvain, 1961, t. LXXIV, № 1-2; նույնի՝ «Studies in Christian Caucasian History», Ceorgtown, 1963 և այլն: – էջ 506:

5. Պարզապես վրիպակ է, պետք է լինի՝ 1736 թ.: – էջ 526:

6. Տե՛ս «Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ», ի լոյս ածին **Գ. Տէր-Մկրտչեան** եւ **Մեսրով Եպիսկոպոս,** Էջմիածին, 1921: Հմմտ. նաև «Արարատ», 1888, էջ 399-404; **Ղ. Ալիշան**, Հայապատում, Վենետիկ, 1901, էջ 221-222: – էջ 527:

7. Խոսքը վերաբերում է Սամուել Անեցուն (տե՛ս «Սամուելի քահանայի Անեցւոյ հավաքմունք ի գրոց պատմագրաց», աշխատասիրությամբ **Ա. Տեր-Միքելյանի,** Վաղարշապատ, 1893): – էջ 528, ծան. 2: